## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակություններից:*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**4**

ԱՊՐԻԼ 1977

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ



### ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА



### ПРОБЛЕМЫ ВОСПИТАНИЯ НОВОГО ЧЕЛОВЕКА



### ЛЮДИ И ГОДЫ



### КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ





# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՍՍՀՄ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ XVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ, 1977 թ. մարտի 21-ին

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Հարգելի հյուրե՛ր։*

*Ինձ պատվավոր և դրա հետ մեկտեղ հաճելի առաքելություն է վստահված՝ արհեստակցական միությունների XVI համագումարի պատգամավորներին ջերմ, սրտագին ողջույն հաղորդել Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, քարտուղարության և սովետական կառավարության կողմից։*

*Արտադրամասերից ու հանքահորերից, կառույցներից, դաշտերից ու ֆերմաներից, գիտական լաբորատորիաներից ու ուսումնական հաստատություններից, պետական հիմնարկներից և ստեղծագործական կազմակերպություններից, մեր բազմազգ հայրենիքի բոլոր հանրապետություններից ու մարզերից այստեղ, այս դահլիճն են բերել իրենց խոհերն ու փորձը աշխատանքի մեծ բանակի պատվիրակները։*

*Այստեղ են գտնվում հերոսական բանվոր դասակարգի ներկայացուցիչները, որի աշխատանքը մեր երկրի հզորության ու բարգավաճման հիմքն է, և որի գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմը, ուղեցույց աստղ է դեպի սոցիալական առաջընթացի գագաթները մեր շարժման ճանապարհին։*

*Այստեղ են գտնվում գյուղի աշխատավորների բազմամիլիոնանոց բանակի ներկայացուցիչները, որոնց անփոխարինելի ներդրումը էկոնոմիկայի ամրապնդման և սովետական մարդկանց կյանքի բարելավման գործում բարձր են գնահատում մեր ամբողջ կուսակցությունը, ամբողջ ժողովուրդը։*

*Կուսակցությունը սկզբունքային նշանակություն է տալիս այն բանին, որ արհմիութենական շարժման մեջ ավելի ու ավելի լայնորեն են ներգրավվում կոլտնտեսականները։ «Ամրապնդել արհմիությունների աշխատանքը,— նշել է Վ. Ի. Լենինը,— նշանակում է այն տարածել ոչ միայն գյուղական պրոլետարիատի, այլև ամբողջ աշխատավոր գյուղացիության վրա»[1]։ Լենինյան այս պատգամը հետևողականորեն կենսագործվում է։*

*Համագումարի պատգամավորների թվում են գիտության, տեխնիկայի, կուլտուրայի և արվեստի շատ գործիչներ, մարդիկ, որոնք ակնառու դեր են խաղում երկրի մտավոր և կուլտուրական պոտենցիալի մեծացման գործում։*

*Այստեղ ներկայացված է աշխատավորների նաև այն բազմամարդ խավը, որոնց մենք ամբողջությամբ վերցրած անվանում ենք ծառայողներ և որոնց գործունեությունը անհրաժեշտ է հասարակական կյանքի ամեն մի բնագավառում։*

*Ուզում եմ հոգևոր առանձնակի ջերմությամբ հիշատակել այս դահլիճում ներկա գտնվող արհմիութենական շարժման ակտիվիստուհիներին, որոնք ներկայացնում են աշխատավոր կանանց ավելի քան 50 միլիոնանոց*

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 42, էջ 285։

թյունը և կերի արտադրությունը ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելը նշանակալի ժամանակներ կպահանջի:

Հաշվի առնելով այդ, Կենտրոնական կոմիտեն բազմիցս նախազգուշացրել է, որ թույլ չտրվեն ծայրահեղություններ, առաջ չընկնեն, խոշոր մասնագիտացված տնտեսությունների վրա հույս դնելով՝ չշտապեն վերացնել ֆերմաները կոլտնտեսություններում և սովխոզներում: Ցավոք, ամենուրեք չէ, որ լսել են այս խորհուրդները: Միայն այդպես կարելի է բացատրել այն տագնապալի փաստը, որ վերջին տարիներս նկատելիորեն ավելացել է այն կոլտնտեսությունների ու սովխոզների թիվը, որոնք այլևս չեն զբաղվում խոզապահությամբ և թռչնաբուծությամբ: Այն պայմաններում, երբ բնակչության անխափան կերպով միս մատակարարելը դեռ չի ապահովվել, նման վիճակի հետ չի կարելի հաշտվել: Մանավանդ որ ապագայում էլ, այնտեղ, որտեղ դա տնտեսապես հիմնավորված է, կոլտնտեսությունների և սովխոզների անասնապահական ֆերմաներից հրաժարվել չի կարելի:

Հարկավոր է ասել ևս մի, ոչ պակաս կարևոր, ռեզերվի մասին: Պարենի պետական ապրանքային ռեսուրսների գոյացման հիմքը, անտարակույս, հանրային արտադրությունն է: Միաժամանակ կարևոր է լիովին օգտագործել նաև անձնական օժանդակ տնտեսությունների հնարավորությունները:

Այս աշխատանքի հաջողությանը կոչված են նպաստելու տեղական մարմինները, կոլտնտեսություններն ու սովխոզները: Լուրջ օգնություն կարող է ցույց տալ նաև սպառողական կոոպերացիան: Մասնավորապես, իմաստ ունենար նրա վրա ավելի մեծ պատասխանատվություն դնել գյուղատնտեսության մեջ և կոլտնտեսություններում եղած գյուղատնտեսական մթերքների ավելցուկների վաճառահանումը կազմակերպելու համար:

Անասնապահության հարաճուն կարիքները ստիպում են նորովի մոտենալ նաև մի քանի այլ հարցերի: Մենք ճիշտ կերպով հացահատիկի արտադրությունը համարել ենք և համարում ենք գյուղատնտեսության զարգացման հիմքերի հիմքը: Մենք բավականաչափ հացահատիկ ունենք բնակչության հացի պարենային կարիքները բավարարելու համար: Այժմ խոսքը վերաբերում է հացահատիկային պրոբլեմի մի այլ, ոչ պակաս կարևոր կողմին, ֆուրաժային հացահատիկի առավել արժեքավոր կուլտուրաների արտադրությունն ավելացնելուն, նրա որակը բարձրացնելուն: Կարևոր է նաև ընդլայնել ոռոգելի մարգագետինների և արոտավայրերի տարածությունները, առվույտի ցանքերը:

Բնակչությանը անխափան կերպով պարեն մատակարարելը պահանջում է, այնուհետև, լրջորեն բարելավել գյուղատնտեսական մթերքների փոխադրումը, պահպանումն ու վերամշակումը: Այս խնդիրների լուծմանը պետք է օգնի երկրում պարենային ամբողջ գործի կառավարման կատարելագործումը: Հարկավոր է արագացնել այդ կարևոր հարցին վերաբերող առաջարկությունների նախապատրաստումը:

Մեր համագումարը, ընկերնե՛ր, տեղի է ունենում գյուղատնտեսության համար շատ պատասխանատու պահի, երբ արդեն սկսում են ծավալվել դաշտային աշխատանքները: Օգտվում եմ առիթից՝ կոլտնտեսականներին և սովխոզների աշխատողներին մեծ հաջողություններ մաղթելու ցանքի աշխատանքներում:

Ընկերնե՛ր: Կուսակցությունը առաջին պլանի վրա է դրել սովետական մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման խնդիրը: Նա հազարավոր ու հազարավոր պրակտիկ գործերի ոլորտն է փոխադրել մեր ծրագրային լոզունգը՝ «Ամեն ինչ մարդու համար, ամեն ինչ հանուն մարդու»:

Դուք գիտեք, թե որքան շատ բան է արվում այդ բնագավառում: Միայն վերջին ամիսներս ընդունվեցին մի շարք նոր, կարևոր որոշումներ: Դրանցից մեկով նախատեսվում է բարձրացնել ավելի քան 30 միլիոն սովետական աշխատավորների դրամական եկամուտները: Մյուսը վերաբերում է մասսայական պահանջարկ վայելող ապրանքների արտադրության զարգացմանը և դրանց



որակի բարձրացմանը: Այդ բոլոր ուղղություններով աշխատանքը կշարունակվի: Կասկած չկա, որ ժողովրդի կյանքի բարելավման հետ կապված խնդիրների լուծման մեջ ծանրակշիռ ավանդ կներդնեն արհմիությունները: Չէ՞ որ արհմիությունները գործում են հենց հանուն մարդու, հանուն նրա շահերի:

Այստեղից հետևում է, թե ինչպիսի առաջնակարգ նշանակություն ունի մշտական հոգատարությունը՝ աշխատապայմանները բարելավելու, ձեռքի ցածրորակ, ծանր ֆիզիկական աշխատանքը նվազագույնի հասցնելու, պրոֆեսիոնալ հիվանդությունների ու արտադրական տրավմատիզմը բացառող իրադրություն ստեղծելու համար:

Արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության ու տրանսպորտի տեխնիկական վերազինումը, որի համար հսկայական գումարներ են հատկացվում, կուսակցությունը դիտում է որպես աշխատապայմանները բարելավելու, բոլոր արտադրությունները մարդու համար անվտանգ, հարմար դարձնելու վճռական միջոց: Մեր նպատակը կարելի է ձևակերպել այսպես. անվտանգության տեխնիկայից դեպի անվտանգ տեխնիկա: Մենք կանգնած ենք այդ ուղու վրա և կշարունակենք դրանով ընթանալ անշեղորեն:

Սակայն, լավ պատկերացնելով հեռանկարը, պետք է տեսնել նաև այն, ինչ շրջապատում է մեզ այժմ, այսօր: Արդյոք մենք կարո՞ղ ենք ասել, թե աշխատապայմանների հետ կապված ամեն ինչ բարեհաջող է մեզանում: Ցավոք՝ ոչ: Լինում է այնպես, որ թե՛ վարչությունը և թե արհմիությունները չեն նկատում լուրջ թերությունները, աշխատապայմանների և անվտանգության տեխնիկայի բարելավման միջոցառումները համարում ինչ-որ երկրորդական բան, հաշտվում կոլեկտիվ պայմանագրերով սահմանված պարտավորությունների կատարման նկատմամբ անհարգալից վերաբերմունքի փաստերի հետ:

Այս տարվա սկզբին ՀԱՄԿԽ-ի առաջարկությամբ որոշում ընդունվեց ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի հետագա բարելավման մասին: Սակայն արհմիությունների նախաձեռնությունը դրանով չպետք է վերջանա: Այն, ինչ նախատեսված է, պետք է անպայման իրագործվի: Սա մինիստրություններին ու գերատեսչություններին, տնտեսական բոլոր ղեկավարներին ներկայացվող անվիճելի պահանջն է: Սա նաև արհմիությունների կարևորագույն խնդիրն է:

Շատ բան պետք է անել նաև ձեռնարկություններում հասարակական սնունդն ու կենցաղի ծառայությունը բարելավելու համար: Այս հարցերում, ինչպես որ, ի դեպ, մյուս բոլոր այն հարցերում, որոնք շոշափում են մարդու շահերը նրա աշխատատեղում, արհմիութենական կոմիտեները պետք է ցուցաբերեն ավելի մեծ պահանջկոտություն, ավելի մեծ մարտականություն:

Մարդու մասին հոգ տանելը, իհարկե չի ավարտվում, չի կարող ավարտվել գործարանի դարպասից այն կողմ: Մեր սոցիալական քաղաքականության մի հսկայական բնագավառ կապված է սովետական մարդկանց կենցաղի բարելավման հետ, նրանց առողջության և հանգստի, այն բանի նկատմամբ ցուցաբերվող հոգատարության հետ, որ աշխատավորներն ու նրանց ընտանիքները կարողանան խելացիորեն, իրենց և հասարակության համար օգտակար կերպով տնօրինել ազատ ժամանակը: Տեխնիկական ստեղծագործությունը, ֆիզկուլտուրայով և սպորտով զբաղվելը, գեղարվեստական ինքնագործունեությունը՝ այս ամենը դարձել է միլիոնների պահանջմունքը, և այստեղ արհմիությունները հսկայական հնարավորություններ ունեն, գործունեության անչափ ընդարձակ ասպարեզ:

Հարկ եմ համարում առանձնապես ընդգծել. ոչ միայն կուսակցական կազմակերպությունները, այլև արհմիությունները չեն կարող պասիվ դիրք գրավել, երբ մի շարք հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում տարեցտարի չեն իրացվում այն զգալի միջոցները, որ հատկացվում են բնակարանների, մանկական հիմնարկների, դպրոցների, հիվանդանոցների, ակումբների, ստադիոնների շինարարության համար: Ընկերնե՛ր, մենք՝ թե՛ կուսակցությունը և թե արհմիությունները, պետք է խստորեն և ուշադիր հետևենք այդ բանին:

Մարդու նկատմամբ հոգատարությունը միայն նրա նյութական պահանջմունքները բավարարելը չէ։ Դիմելով համագումարի պատգամավորներին, ես կցանկանայի առանձնացնել գործի բարոյական կողմը։ Այստեղ առանձնահատուկ ծախսեր չեն պահանջվում։ Փոխարենը անհրաժեշտ է միանգամայն այլ բան՝ ամենուրեք և ամենօրյա ուշադրություն և զգայուն վերաբերմունք մարդու հանդեպ։

Ինչպե՞ս գրավիչ դարձնել զառամյալի ծերությունը։ Ինչպե՞ս թեթևացնել հաշմանդամի վիճակը։ Ինչպե՞ս ամոքել իսկական կամ թվացյալ վիրավորանքը։ Կյանքն ամեն քայլափոխին նման հարցեր է առաջադրում, և դրանք կարելի է լուծել միայն մարդու նկատմամբ հոգատար վերաբերմունքի մեծ արվեստը անդուլ կերպով կատարելագործելով։ Եվ ուրիշ ով, եթե ոչ արհմիությունները, որոնք գտնվում են կյանքի հորձանուտում, պետք է ակտիվորեն մասնակցեն այդ մեծ գործին, որից կախված է յուրաքանչյուր սովետական մարդու բախտը, երջանկությունը։

Ընկերնե՛ր։ Կուսակցությունն առաջնահերթ նշանակություն է տալիս արտադրության մեջ դեմոկրատական սկզբունքների զարգացմանը։ Սոցիալիստական հասարակության մեջ աշխատավոր մարդը այս կամ այն գործողությունների, այս կամ այն ցուցումների մեխանիկական կատարող չէ։ Նրա համար կարևոր են ոչ միայն սեփական ջանքերի անմիջական արդասիքը, այլև դրանց տեղն ու նշանակությունը ընդհանուր աշխատանքային պրոցեսում։ Ընդհանուր գործում իրենց անձնական ավանդը ներդնելու ձգտումն ու հնարավորությունը աշխատանքային գործունեության հսկայական խթան են, սովորեցնում են մտածել մասշտաբայնորեն, պետականորեն, ընդհանուր հոգսերը ընկալել որպես սեփական հոգսեր։

Այնտեղ, ուր բանվոր մարդը գիտե, որ իր ձայնին ունկնդրում են, իր հետ հաշվի են նստում, որ իր դիրքավորումը իրոք հաշվի է առնվում սոցիալական ու տնտեսական պլանները մշակելիս, այնտեղ և միայն այնտեղ է նա իրեն զգում որպես արտադրության իսկական տերը, իր բախտի տերը։ Այսպես են միահյուսվում քաղաքական խնդիրներն ու արտադրական խնդիրները։

Այն, ինչ անում են արհմիությունները, աշխատավորներին ավելի ու ավելի լայնորեն ներգրավելով արտադրության կառավարման մեջ, սոցիալիստական դեմոկրատիզմի դրսևորումներից միայն մեկն է։ Հանդես գալով որպես ազդեցիկ հասարակական ուժ, արհմիությունները մեծ դեր են խաղում մեր ամբողջ քաղաքական սիստեմում, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման գործում։ Մեզ համար այստեղ առանցքային հարց է եղել և կլինի հենց այն, ինչ որ կոնկրետ նշանակում է դեմոկրատիա բառը, այսինքն՝ ժողովրդապետություն, այսինքն՝ մասսաների մասնակցություն պետական ու հասարակական գործերի տնօրինմանը, այն «իսկական ժողովրդական ինքնավարությունը»[1], որի մասին ասել է Վ. Ի. Լենինը։

Սոցիալիզմը և դեմոկրատիան անբաժանելի են։ Կառուցելով կոմունիզմ, մենք ավելի ու ավելի լայնորեն կզարգացնենք դեմոկրատիան։ Իհարկե, խոսքը սոցիալիստական, այսինքն՝ այնպիսի դեմոկրատիայի մասին է, որն ընդգրկում է թե՛ քաղաքական, թե՛ սոցիալական և թե տնտեսական ոլորտները, այնպիսի դեմոկրատիայի, որը նախ և առաջ ապահովում է սոցիալական արդարություն և սոցիալական հավասարություն։

Ընկերնե՛ր։ Ներկայումս երկրում կան գրեթե 700 հազար սկզբնական արհմիութենական կազմակերպություններ, մոտ կես միլիոն արտադրամասային կոմիտեներ, երկուսուկես միլիոն արհմիութենական խմբեր։ Դա մեծ ուժ է։ Եվ այդ ուժը գործում է հնգամյա պլանների կատարման, արտադրության արդյունավետության բարձրացման և նրա որակական բոլոր ցուցանիշների բարելավման համար մղվող պայքարի առաջնագծում։ Այդ ուժը գործում է բոլոր աշխատանքային կոլեկտիվներում, այսինքն՝ հենց այնտեղ, որտեղ քաղաքականության ու էկոնոմիկայի մեծ հասկացությունները թարգմանվում են պրակտի-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 124։



կայի լեզվով, որտեղ մարդկանց մեջ մեծամասամբ ձևավորվում է վերաբերմունքը կյանքի, հասարակության հանդեպ։

Մարդու համար այն կոլեկտիվը, ուր ինքը աշխատում է, թե՛ մի յուրատեսակ տուն է, թե՛ ընտանիք և թե դպրոց։ Հենց այստեղ են մի սերնդից մյուսին փոխանցվում պրոֆեսիոնալ փորձը, վարպետությունը, խղճի մտոք աշխատելու սովորությունը։

Հենց այստեղ սրտից սիրտ երիտասարդությանն են փոխանցվում կոմունիստական գաղափարայնությունը, հավատարմությունը կուսակցության գործին, միշտ առջևում, ամենադժվարին, ամենավճռական տեղամասերում լինելու պատրաստակամությունը։

Չի կարելի պատկերացնել աշխատանքային կոլեկտիվ առանց արհմիութենական խմբի, առանց արհկոմի կամ գործարհկոմի։ Միլիոնավոր արհմիութենական ակտիվիստներ, այդ եռանդուն ու նախաձեռնող մարդիկ, կամավոր և անշահախնդիր, սփռում են բարություն, հոգատարություն և օգնություն են ցույց տալիս յուրաքանչյուր աշխատավորի, յուրաքանչյուր ընտանիքի։ Ուստի, թող հասարակական աշխատողի այդ ոչ դյուրին, բայց և այնքան օգտակար աշխատանքը միշտ ըմբռնման ու շնորհակալության արժանանա։

Եվս մի դիտողություն, ընկերնե՛ր։ Կարծում եմ, որ արդյունավետության ու որակի՝ կուսակցության կուրսը ուղղակիորեն առնչվում է նաև մեր ամբողջ հասարակական, այդ թվում և արհմիութենական աշխատանքի ոճի հետ։ Պետք չէ ընկնել միջոցառումների քանակի ետևից։ Եկեք տեսնենք, թե մենք արդյոք չափից դուրս հաճախ, արդյոք չափից դուրս երկար նիստեր չե՞նք անում։ Արդյոք մենք չափից դուրս շատ չե՞նք ստեղծում զանազան թղթեր՝ կարգադրություններ, որոշումներ, երբեմն մոռանալով ստուգել, իսկն ասած, այդ թղթերն ինչ են փոխում բուն կյանքում։ Ոչ թե թղթերի քանակ, ոչ թե նիստերի քանակ ու տևողություն, այլ քաղաքական հստակ նպատակամղվածություն, գործարարություն, գործնական արդյունքներ՝ ահա այն չափանիշները, որոնցով կարելի է և պետք է գնահատել հասարակական աշխատանքը։

Ընկերնե՛ր։ Սովետական արհմիությունները պատկառելի նյութական բազա և ֆինանսական մեծ ռեսուրսներ ունեն իրենց տրամադրության տակ։

Ներկայումս, կուսակցության XXV համագումարի որոշումներին համապատասխան, տեղի է ունենում արտադրական արհմիությունների կառուցվածքի լուրջ վերափոխում, նրանց գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործում։ Դա՛, անտարակույս, դրականորեն կանդրադառնա արհմիությունների աշխատանքի վրա։

Արհմիությունները ձևերի ու միջոցների հարուստ զինանոց ունեն իրենց իրավունքների իրականացման համար՝ բանվորական ժողովներ, մշտապես գործող արտադրական խորհրդակցություններ, կոլեկտիվ պայմանագրեր։ Նրանք օրենսդրական նախաձեռնության իրավունք ունեն։ Մի խոսքով, արհմիություններն իրավունքներ ու հնարավորություններ շատ ունեն։ Կարևոր է ավելի լրիվ և արդյունավետ օգտվել դրանցից։

Հավաստիացնում եմ ձեզ, ընկերնե՛ր, որ տնտեսավարներին, ադմինիստրացիային ուղղված՝ արհմիությունների բոլոր արդարացի պահանջները, անտարակույս, կգտնեն կուսակցության աջակցությունը։ Ուշադրություն դարձրեք «արդարացի» բառի վրա։

Ընկեր պատգամավորնե՛ր։ Մեր ժամանակն աշխատավոր մարդու համաշխարհային պատմական դերի անշեղ բարձրացման ժամանակն է։ Աշխատավորներն ամենուրեք ընթանում են խաղաղության և միջազգային անվտանգության, ազգային-ազատագրության և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի ավանգարդում։ Նրանք իրենց ձեռքն են վերցնում քաղաքակրթության բախտը։ Դրանք հուսալի ուժեղ ձեռքեր են։

Բանվորական և արհմիութենական շարժման մեջ կատարվող տեղաշարժերի ընդհանուր ուղղության գնահատականը մեր կուսակցության կողմից տրվեց վերջին համագումարներում։ Մենք ելել ենք և ելնում ենք այն բանից, որ բանվորական շարժումը դառնում է հասարակական առաջադիմության ավելի

ու ավելի կարևոր գործոնը։ Դրա հետ մեկտեղ նա ավելի ու ավելի պատասխանատու է դառնում պատմության հանդեպ։ Իսկ դրանից հետևում է աշխատանքի համաշխարհային բանակի միասնության՝ սոցիալական առաջադիմության, խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարի միասնության հետագա ամրապնդման անհրաժեշտությունը։

Արհմիությունների XVI համագումարը, որին մասնակցելու են եկել պատվիրակություններ մոլորակի բոլոր անկյուններից, պրոլետարական համերաշխության լոզունգի կենսականության հոյակապ ցուցադրումն է, այն բանի վկայությունը, որ նրա նշանակությունը լավ են գիտակցում տարբեր երկրներում։ Թույլ տվեք ջերմորեն ողջունել բոլոր արտասահմանյան հյուրերին։

Մենք համոզված ենք, որ այսօր բարենպաստ պայմաններ են ստեղծվում բանվորական շարժման տարբեր հոսանքների միջև համագործակցություն հաստատելու համար՝ ինչպես ազգային, այնպես էլ միջազգային տեսակետից։ Ավելի ու ավելի կանոնավոր են դառնում կոնտակտները նաև տարբեր կողմնորոշում ունեցող արհմիությունների միջև, ուժգնանում է նրանց փոխգործողությունը մյուս հասարակական ուժերի հետ։

Մենք ողջունում ենք միջազգային խոշորագույն արհմիութենական կենտրոնների՝ արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի, ազատ արհմիությունների միջազգային կոնֆեդերացիայի և աշխատանքի համաշխարհային կոնֆեդերացիայի միջև ընդհանուր դիրքերի որոշմանը և համագործակցության հաստատմանը նպաստող բոլոր քայլերը։

Եվ թեպետ միջազգային արհմիութենական շարժման միասնության հասնելը տևական ու բարդ պրոցես է, մենք համոզված ենք, որ այն ընթանալու է վերելքի ուղիով։ Համենայն դեպս, սովետական արհմիություններն աշխատել են և կաշխատեն հենց այդ հեռանկարները նկատի ունենալով։

Անցնելով արտաքին քաղաքական հարցերին, ուզում եմ ընդգծել, որ միջազգային ասպարեզում մեր կուսակցության և սովետական պետության ամբողջ աշխատանքը՝ այդ մեծ ու լարված աշխատանքը, սահմանվել ու սահմանվում է խաղաղության և միջազգային համագործակցության հետագա պայքարի՝ XXV համագումարի ընդունած ծրագրով։ Այդ իսկ ծրագիրը, իհարկե, նկատի է առնված ոչ մեկ տարվա համար։ Բայց մեկ տարում էլ արդեն քիչ բան չի արված։

Դա առաջին հերթին վերաբերում է եղբայրական սոցիալիստական պետությունների միասնության ամրապնդմանը, նրանց համակողմանի գործակցության խորացմանը։

Ավելի ու ավելի ինտենսիվ են դառնում կապերն ու կոնտակտները սոցիալիստական երկրների ղեկավարության միջև։ ՍՄԿԿ XXV համագումարից հետո երեք անգամ՝ Բեռլինում, Բուխարեստում, Մոսկվայում կոլեկտիվ կերպով հանդիպել են եղբայրական կուսակցությունների ղեկավարները, չխոսելով արդեն Ղրիմի զրույցների մասին։ Սոֆիայում հենց վերջերս տեղի ունեցավ կենտկոմների՝ միջազգային և գաղափարական հարցերի գծով քարտուղարների հերթական, արդեն չորրորդ, հանդիպումը։ Առաջիկայում տեղի կունենան կենտկոմների կազմակերպական-կուսակցական աշխատանքի գծով քարտուղարների խորհրդակցությունը, Վարշավայի պայմանագրի երկրների արտաքին գործերի մինիստրների կոմիտեի առաջին նիստը։

Հեռավոր՝ 1914 թվականին, իմպերիալիստական պատերազմով բռնկված, թշնամանքով և ատելությամբ պառակտված աշխարհում Վլադիմիր Իլյիչ Լենինը, մտածելով գալիքի մասին, գրում էր. «Սոցիալիստական շարժումը... ստեղծում է մարդկային համակեցության նոր, բարձրագույն ձևեր, երբ ամեն մի ազգության աշխատավոր մասսաների օրինական պահանջմունքներն ու պրոգրեսիվ ձգտումներն առաջին անգամ կբավարարվեն ինտերնացիոնալ միասնության մեջ...»[1]։

Այսօր դա դարձել է սոցիալիստական պետությունների մեծ ու համերաշխ,

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 33։



իրավահավասար ընտանիքի իրական պրակտիկան։ Եղբայրական երկրների համագործակցության զարգացման համապարփակ աշխատանքի մեջ ներգրավված են ոչ միայն կենտրոնական ղեկավար մարմինները, այլև մեր կուսակցական, սովետական և տնտեսական օրգանիզմի փաստորեն բոլոր օղակները, ինչպես նաև հասարակական կազմակերպությունների շատ լայն ցանցը, այդ թվում, իհարկե, նաև մեր երկրի արհեստակցական միությունները։

Հարյուրավոր, հազարավոր սովետական մարդիկ այսօր աշխատում են եղբայրական երկրներում, օգնելով մեր բարեկամներին՝ ստեղծելու այնպիսի կարևորագույն ժողովրդատնտեսական օբյեկտներ, ինչպիսիք են, օրինակ, «Կատովիցեի» հսկայական մետալուրգիական կոմբինատը Լեհաստանում։ Մեր երկրում էլ աշխատում են եղբայրական երկրներից եկած ոչ քիչ թվով բանվորներ ու մասնագետներ։ Սոցիալիստական երկրների համատեղ կառույցը՝ Օրենբուրգ—ՍՍՀՄ-ի Արևմտյան սահման գազամուղի երկարությունն ավելացավ հազար երկու հարյուր կիլոմետրով։ Դա շինարարների 15 հազարանոց ինտերնացիոնալ կոլեկտիվի մեծ հաջողությունն է։ Արդեն հեռու չէ այն օրը, երբ նրանց ջանքերով կառուցվող՝ Եվրոպայում խոշորագույն մայրուղին կգործարկվի։

ՏՓԽ-ի անդամ բոլոր երկրները մասնակցում են Կուբայում նիկելի ինդուստրիայի զարգացմանը։ Շատ կարևոր նշանակություն ունեն ՏՓԽ-ի անդամ երկրների սկսվող մասնագիտացումն ու կոոպերացումը ատոմային էլեկտրակայանների սարքավորումների արտադրության ասպարեզում։

Մենք բոլորս սովորել ենք այդ գործերին, դրանք համարում ենք միանգամայն բնական բան։ Եվ դա վատ չէ։ Դա լավ է, երբ սերտ համագործակցությունը դառնում է մեր գիտակցության, մեր ամբողջ կյանքի օրգանական մասը։

Թե որքան հզոր ու կենարար են սոցիալիստական երկրների ժողովուրդներին միավորող եղբայրական հարաբերությունների արմատները, վկայում է ժողովրդական Հունգարիայի փառապանծ ձեռնարկության՝ «Կարմիր Չեպելի» կոլեկտիվի վերջերս ցուցաբերած հրաշալի նախաձեռնությունը։ Չեպելցիները սոցիալիստական մրցություն են ծավալել ի պատիվ մեծ Հոկտեմբերի 60-ամյակի և ստանձնել են Սովետական Միության համար արտահանական մատակարարումները ժամկետից շուտ կատարելու կոնկրետ պարտավորություններ։ Նույնպիսի նախաձեռնություններով հանդես են եկել Բուլղարիայի և Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Լեհաստանի և Չեխոսլովակիայի բանվորները։

Թույլ տվեք այս համագումարի ամբիոնից ամբողջ սրտով եղբայրական երկրների աշխատավորներին շնորհակալություն հայտնել այն բանի համար, որ նրանք այդպիսի գործուն և հուզիչ համերաշխություն են ցուցաբերել Հոկտեմբերի գործի, մեր երկրի հետ, մեր կոմունիստական աշխատանքի հետ։ Ինձ թվում է՝ արտահայտած կլինեմ մեր ընդհանուր կարծիքը, եթե ասեմ, որ սովետական բանվոր դասակարգը, սովետական բոլոր աշխատավորներն արժանի կերպով կպատասխանեն իրենց արտասահմանյան ընկերների ազնիվ նախաձեռնություններին, կպատասխանեն կոմունիզմի կառուցման, մեր սերտ համագործակցության զարգացման նոր գործերով։

Եթե լավ խորհելու լինենք, ընկերնե՛ր, ապա ընդհանուր առմամբ մենք այստեղ գործ ունենք որակապես նոր երևույթի հետ՝ միասնական նպատակով ոգեշնչվող՝ նոր աշխարհի միլիոնավոր ու միլիոնավոր կառուցողների ինտերնացիոնալ շարժման հետ։ Դա հսկայական նշանակություն ունեցող նախաձեռնություն է, նա մեծ ապագա ունի։

Մեր արտաքին քաղաքականության մեջ մենք և մեր սոցիալիստական դաշնակիցները հաստատորեն հետևում ենք խաղաղության լենինյան կուրսին։ Զարգացնելով և խորացնելով համագործակցությունը գաղութային ճնշումից ազատագրված երկրների հետ, որտեղ հնարավոր է փոխգործելով բուրժուական պետությունների՝ ռեալիստորեն մտածող շրջանների հետ, սոցիալիզմի երկրները առաջ են քաշում համաշխարհային քաղաքական կլիմայի բարելավ-

մանը նպատակամղված կոնկրետ նախաձեռնություններ։ Հենց այդպիսի առաջարկություններով հանդես եկան Վարշավայի պայմանագրի մասնակիցներն իրենց քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի նոյեմբերյան խորհրդակցությունում։ Խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար սոցիալիստական համագործակցության հետևողական պայքարն արժանանում է եվրոպական և միջազգային հասարակայնության լայն ըմբռնմանը։

Բայց կապիտալիզմի աշխարհում դեռևս կան ազդեցիկ քաղաքական շրջաններ, որոնք շահագրգռված են միջազգային կոնստրուկտիվ երկխոսության խախտմամբ։ Հին աշխարհի հետադեմ ուժերը ոչ մի կերպ չեն ուզում հաշտվել նորի աճի և ամրապնդման հետ։

Նրանք, օրինակ, ոչ մի կերպ չեն ուզում հաշտվել գաղութային լծից ազատագրված աֆրիկյան և ասիական պետությունների ազատ, անկախ քաղաքականության և առաջադիմական զարգացման հետ։ Դրա վերջին օրինակներն են ՆԱՏՕ-ի երկրների միջամտությունը Զաիրի ներքին ռազմական կոնֆլիկտին և նոր զրպարտչական կամպանիան՝ ընդդեմ Անգոլայի Ժողովրդական Հանրապետության։ Այդ են վկայում նաև այն ստոր սպանությունները, որոնց զոհը օրերս դարձան ազգային-ազատագրական պայքարի նշանավոր գործիչներ՝ Կոնգոյի Ժողովրդական Հանրապետության պրեզիդենտ Մարիան Նգուաբին և Լիբանանի առաջադիմական սոցիալիստական կուսակցության նախագահ Քամալ Ջումբլաթը։ Սովետական մարդիկ ցասումով դատապարտում են այդ սպանությունները։

Պակաս համառորեն չեն անցկացվում սոցիալիզմի աշխարհի դեմ «ուղղված օպերացիաները»։ Փորձեր են արվում՝ թուլացնելու սոցիալիստական դաշինքը, տարբեր եղանակներով խախտելու նրա մասնակիցների միասնությունը։ Փորձեր են արվում խարխլելու սոցիալիստական կարգերը։

Մեր հակառակորդները կուզենային գտնել մեր երկրների ներսում սոցիալիզմի դեմ հանդես եկող թեկուզ որևիցե ուժ։ Բայց քանի որ այդպիսի ուժեր չկան, քանի որ սոցիալիստական հասարակարգում չկան ոչ ճնշված, շահագործվող դասակարգեր, ոչ էլ ճնշված, շահագործվող ազգություններ, ապա հորինում են ինչ-որ էրզաց, կեղծ ռեկլամի միջոցով ստեղծում են սոցիալիստական երկրներում «ներքին օպոզիցիայի» պատրանք։ Հենց այդ պատճառով էլ կազմակերպվում է աղմկարարություն, այսպես կոչված՝ «այլախոհների» մասին, աշխարհով մեկ ճչում են սոցիալիզմի երկրներում «մարդու իրավունքների խախտման» մասին։

Ի՞նչ կարելի է ասել այդ առթիվ։ Մեզանում չի արգելվում «խորհել այլ կերպ», քան մեծամասնությունն է խորհում. քննադատաբար գնահատել հասարակական կյանքի այս կամ այն կողմը։ Այն ընկերների նկատմամբ, ովքեր հանդես են գալիս հիմնավորված քննադատությամբ, ձգտելով օգնել գործին, մենք վերաբերվում ենք որպես բարեխիղճ քննադատների և շնորհակալ ենք նրանցից։ Նրանց նկատմամբ, ովքեր քննադատում են սխալ կերպով, մենք վերաբերվում ենք որպես մոլորվող մարդկանց։

Ուրիշ բան է, երբ մեր հասարակությունից կտրված մի քանի անձինք ակտիվորեն հանդես են գալիս սոցիալիստական կարգերի դեմ, կանգնում հակասովետական գործունեության ուղու վրա, խախտում օրենքները և հենարան չունենալով երկրի ներսում, աջակցություն ստանալու են դիմում արտասահման, իմպերիալիստական պրոպագանդիստական և հետախուզական քայքայիչ կենտրոններին։ Մեր ժողովուրդը պահանջում է, որ այդպիսի, թող թույլ տրվի ասել, գործիչների հետ վարվեն որպես սոցիալիզմի հակառակորդների, սեփական հայրենիքին դեմ գնացող մարդկանց, իմպերիալիզմի աջակիցների, նույնիսկ գործակալների։ Բնական է, որ մենք նրանց նկատմամբ ձեռնարկում ենք և կձեռնարկենք մեր օրենքով նախատեսված միջոցներ։

Եվ թող այստեղ արդեն մեզնից ոչ ոք չնեղանա, այդօրինակ թափթփուկների գործողություններից 260 միլիոն սովետական մարդկանց իրավունքների, ազատությունների և անվտանգության պաշտպանությունը ոչ միայն մեր իրավունքն է, այլև մեր սրբազան պարտքը։ Պարտք այն ժողովրդի հանդեպ, որը



60 տարի առաջ Լենինի կուսակցության ղեկավարությամբ բռնեց սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղին։ Այն ժողովրդի հանդեպ, որը, պաշտպանելով սոցիալիստական հայրենիքը, իր ուզած ձևով ապրելու իր իրավունքը, 20 միլիոն զոհ տվեց ֆաշիստ ագրեսորների դեմ, հենց ժողովուրդների ազատության ու իրավունքների համար մղված մեծ պատերազմում, և որն իր ուղուց երբեք չի շեղվի։

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մենք չենք միջամտում ուրիշ երկրների ներքին գործերին, թեև, իհարկե, մեր միանգամայն որոշակի կարծիքն ունենք իմպերիալիզմի աշխարհում տիրող կարգերի մասին և չենք թաքցնում այդ կարծիքը։ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների համաձայն, մենք ձգտում ենք կապիտալիստական երկրների հետ ունեցած մեր հարաբերությունները հիմնել տարբեր ոլորտներում տևական փոխշահավետ համագործակցության վրա՝ հանուն ընդհանուր խաղաղության ամրապնդման։

Մի քանի խոսքով կասեմ, թե այժմ ինչպես են գործերը այդ բնագավառում։

Նախ և առաջ սովետա-ամերիկյան հարաբերությունների մասին, որոնց դրական զարգացմանը մենք միշտ էլ տվել ենք ու տալիս ենք մեծ նշանակություն։ Այստեղ խնդիրը ներկայումս որոշվում է, ես կասեի, երեք հիմնական գործոններով։ Առաջինը այն պատկառելի հիմքն է, որն ստեղծվեց տարբեր բնագավառներում համագործակցության վերաբերյալ 1972—1974 թվականներին կարևոր պայմանագրերի և համաձայնագրերի կնքմամբ։ Երկրորդը որոշակի լճացման վիճակն է։ Ամերիկյան կողմը սկզբում այս բացատրում էր Միացյալ Նահանգներում ծավալված նախընտրական կամպանիայով, բայց Վաշինգտոնում նոր վարչակազմի իշխանության գլուխ գտնվելու առաջին երկու ամիսները ինչ-որ ցույց չեն տալիս, թե ձգտում կա հաղթահարելու այդ լճացումը։ Եվ, վերջապես, երրորդ գործոնը տարբեր ոլորտներում իրավահավասար և փոխշահավետ համագործակցության հետագա զարգացման համար օբյեկտիվ մեծ հնարավորությունների առկայությունն է՝ ի բարօրություն երկու երկրների և ընդհանուր խաղաղության։

Այդ կապակցությամբ կհիշատակեմ մի քանի կոնկրետ և, մեր կարծիքով, միանգամայն ռեալ խնդիրներ։ Դա նախ և առաջ ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման մասին 1974 թվականին հիմնականում արդեն համաձայնեցված նոր համաձայնագրի նախապատրաստման ավարտումն ու ստորագրումն է և այդ հիման վրա հետագա առաջընթացը դեպի սպառազինությունների փոխադարձ կրճատում՝ կողմերի հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքի խստիվ պահպանմամբ հանդերձ։ Այնուհետև, դրանք ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի հնարավոր համատեղ նախաձեռնություններն են քիմիական զենքի առավել վտանգավոր մահաբեր տեսակների արգելման ու վերացման բնագավառում և սպառազինությունների մրցավազքը զսպող ու ժողովուրդների անվտանգությունն ամրապնդող մյուս միջոցառումները։ Դա նաև փոխշահավետ առևտրատնտեսական կապերի լայն զարգացումն է ԱՄՆ-ի ստեղծած խտրական արգելքները վերացնելու և այդ հարցերի շուրջը արդեն վաղուց ստորագրված համաձայնագրերը ուժի մեջ մտցնելու հիման վրա։ Դրանք, վերջապես, մեր երկրների համաձայնեցված գործողություններն են Մերձավոր Արևելքում արդարացի և կայուն խաղաղ կարգավորման հասնելու նպատակով։

Մենք այդ բոլոր հնարավորություններն ակտիվորեն օգտագործելու կողմնակիցն ենք։

Բայց կան նաև այնպիսի հանգամանքներ, որոնք ուղղակի հակազդում են սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա լավացմանն ու զարգացմանը։ Դրանցից մեկը իբր ՍՍՀՄ-ից եկող «ռազմական սպառնալիքի» առթիվ զրպարտչական կամպանիայի բորբոքումն է։ Այս մասին ես արդեն առիթ եմ ունեցել խոսելու վերջերս։ Մյուսը Սովետական Միության ներքին գործերին միջամտելու ամերիկյան պաշտոնական անձանց ուղղակի փորձերն են։

Մինչդեռ ուրիշներին ապրել սովորեցնելու Վաշինգտոնի հավակնություն-

ները, կարծում եմ, չեն կարող ընդունվել ոչ մի սուվերեն պետության կողմից, չխոսելով արդեն այն մասին, որ այդպիսի հավակնությունների համար հիմքեր չեն տալիս ո՛չ հենց ԱՄՆ-ում տիրող իրերի վիճակը, ո՛չ էլ նրա գործողություններն ու քաղաքականությունը արտաքին աշխարհում:

Մեկ անգամ ես կրկնում եմ. մենք չենք հանդուրժի, որ որևէ մեկը որևէ պատրվակով միջամտի մեր ներքին գործերին: Այդպիսի միջամտության հիմքի վրա հարաբերությունների նորմալ զարգացումը, անշուշտ, աներևակայելի է:

Սովետական Միությունը միշտ պաշտպանել է և հաստատակամորեն կպաշտպանի իր սուվերեն իրավունքները, իր արժանապատվությունը և իր շահերը: Դրա հետ մեկտեղ, մյուս կողմի կոնստրուկտիվ, ռեալիստական մոտեցումը մեզ մոտ միշտ ըմբռնում և համաձայնության գալու պատրաստակամություն կգտնի:

Մոտ օրերս բանակցությունների համար Մոսկվա է գալու ԱՄՆ-ի պետական քարտուղար պր-ն Վենսը: Տեսնենք, թե ինչ ծրագրերով կգա նա: Ամենքն, իհարկե, հասկանում են այն բանի կարևորությունը, թե ինչպես կընթանա սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա զարգացումը: Մենք կկամենայինք, որ այդ հարաբերությունները լինեին բարիդրացիական: Բայց դրա համար անհրաժեշտ են փոխըմբռնման որոշակի մակարդակ և գոնե նվազագույն փոխկոռեկտություն:

Իհարկե, մենք համոզված ենք, որ մեր երկու երկրների ժողովուրդների և ընդհանուր խաղաղության պահպանման շահերն իրենց համար ճանապարհ կհարթեն, և ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի հարաբերությունները, վերջին հաշվով, կկարգավորվեն: Ամբողջ հարցն այն է, թե դա երբ տեղի կունենա, թե որքան ժամանակ կվատնվի, որի ընթացքում կարելի կլիներ օգտակար շատ բան անել:

Եթե խոսելու լինենք Արևմտյան Եվրոպայի երկրների հետ մեր հարաբերությունների մասին, ապա դրանք ընդհանուր առմամբ վատ չեն զարգանում: ՍՍՀՄ-ը և Ֆրանսիան իր ժամանակին եղան լարվածության թուլացման, այսպես ասած, ռահվիրաները, նրանց փոխհարաբերություններն անվանում էին «գերադասելի»: Որոշ չափով դա ճշմարիտ է նաև այժմ. մենք աշխույժ կապեր ենք պահպանում էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում: Մենք համագործակցում ենք նաև արտաքին քաղաքական մի քանի հարցերում: Սովետական Միությունում գնահատում են այն փաստը, որ Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Իտալիայի, Մեծ Բրիտանիայի ղեկավարները հանդես են գալիս լարվածության թուլացման քաղաքականության, խաղաղ համագործակցության քաղաքականության պաշտպանությամբ: ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի հարաբերությունների բնագավառում, ինչպես մեզ թվում է, դեռ կարելի է և պետք է շատ բան անել: Կան նաև առաջ տարված որոշ գործեր, որոնք հարկավոր է մինչև վերջ հասցնել: Ինչպես հայտնի է, այս տարի ես այցելելու եմ Ֆրանսիա և ԳՖՀ: Մենք հուսով ենք, որ առաջիկա բանակցությունները վերստին կխթանեն հարաբերությունների զարգացումը այդ երկրների հետ:

Եվրոպայի քաղաքական կյանքում նկատելի իրադարձություն եղավ վերջերս ՍՍՀՄ-ի և Իսպանիայի հարաբերությունների վերականգնումը: Վերջին ժամանակներս մենք արդեն բավականին լավ համագործակցություն ենք հաստատել այդ երկրի հետ, գլխավորապես՝ տնտեսական գործերում: Հիմա, պետք է ենթադրել, մեր հարաբերություններն է՛լ ավելի կզարգանան: Մենք հետաքրքրությամբ ենք հետևում Իսպանիայի քաղաքական կյանքի դեմոկրատացման պրոցեսին և իսպանական ժողովրդին հետագա հաջողություններ ենք մաղթում այդ ճանապարհին:

Ընկերնե՛ր: 20 ամիս է անցել այն օրից, երբ 35 երկրների պետությունների և կառավարությունների ղեկավարներն իրենց ստորագրություններով վավերացրին Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության եզրափակիչ ակտը: Այդ ժամանակամիջոցում Եվրոպայում խաղաղությունն է՛լ ավելի է ամրապնդվել, իսկ երկրների տնտեսական, կուլտուրական և մյուս կապերը նկատելիորեն ավելի են ընդլայնվել ու հարստացել: Մենք, Սովետական Միությունում, ողջունում ենք դա: Մենք կողմնակից



ենք այն բանին, որ լարվածության թուլացումը շարունակվի: Մենք ըստ ամենայնի կնպաստենք դրան, որովհետև այդ են պահանջում ժողովուրդների շահերը:

Այժմ համաեվրոպական խորհրդակցության մասնակից երկրներում ծավալվել է Բելգրադի հանդիպման նախապատրաստությունը, որը Հելսինկիից հետո նրանց ներկայացուցիչների առաջին կոլեկտիվ հանդիպումը կլինի: Իսկ մենք կամենում ենք, որ այնտեղ տեղի ունենա սուվերեն պարտնյորների կոնստրուկտիվ, գործնական խոսակցություն: Հելսինկիի խորհրդակցությունը, ինչպես հայտնի է, կոչվում էր Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցություն: Ուստի մենք գտնում ենք, որ Բելգրադի հանդիպման գլխավոր բովանդակությունը հենց պետք է դառնա հոգատարությունը Եվրոպայի խաղաղության և անվտանգության նկատմամբ, Եվրոպական ժողովուրդների համագործակցության զարգացման նկատմամբ:

Ոչ թե սոսկ հանրագումարի բերել այն, ինչ արդեն արված է, այլ պայմանավորվել հետագա համագործակցության հարցերի վերաբերյալ մի քանի կոնկրետ հանձնարարականների և առաջարկությունների շուրջը. մենք այսպես ենք պատկերացնում Հարավսլավիայի մայրաքաղաքում կայանալիք հանդիպման գլխավոր խնդիրները:

Մերձավոր Արևելք՝ ահա այն մյուս շրջանը, որը շարունակում է իր վրա գրավել ուշադրությունը: Վերջին շաբաթներս այստեղ նկատվում է դիվանագիտական ակտիվության նկատելի բարձրացում: Դատելով ըստ ամենայնի, հետզհետե ավելի ու ավելի ռեալ գործ է դառնում Ժնևի կոնֆերանսի աշխատանքի վերսկսումը: Իրադարձությունների այդ ընթացքը կարելի կլիներ, իհարկե, միայն ողջունել:

Բայց Ժնևի կոնֆերանսը, անշուշտ, ինքնանպատակ չէ: Գլխավորը նրա աշխատանքի բեղմնավոր և արդարացի արդյունքներն են: Հասկանալի է, հաշտության պայմանների մշակումն իր բոլոր մանրամասներով առաջին հերթին հենց հակամարտ կողմերի գործն է: Սակայն Սովետական Միությունը, որպես Ժնևի կոնֆերանսի համանախագահ և այն շրջանի անմիջական մոտակայքում գտնվող պետություն, որի մասին խոսվում է, իր կարծիքն ունի ապագա խաղաղ կարգավորման գլխավոր սկզբունքների և ուղղությունների վերաբերյալ:

Մենք, մասնավորապես, գտնում ենք, որ Մերձավոր Արևելքի խաղաղության մասին ամփոփիչ փաստաթղթի (կամ փաստաթղթերի) հիմքում պետք է դրված լինեն պատերազմների միջոցով տերիտորիայի ձեռքբերման անթույլատրելիության սկզբունքը, այդ շրջանի բոլոր պետությունների անկախ գոյության և անվտանգության իրավունքը: Իհարկե, պետք է ապահովվեն Պաղեստինի արաբ ժողովրդի անկապտելի իրավունքները, ներառյալ նրա ինքնորոշման, սեփական պետություն ստեղծելու իրավունքը:

Մենք անվիճելի ենք համարում, որ հաշտության փաստաթղթերով պետք է նախատեսվի իսրայելական զորքերի դուրսբերումը 1967 թվականին օկուպացված բոլոր արաբական տերիտորիաներից: Այդ դուրսբերումը կարելի կլիներ իրականացնել ոչ թե անմիջապես, այլ փուլ առ փուլ, ասենք, մի քանի ամսվա ընթացքում, խիստ որոշակի ժամկետներում: Պետք է հստակորեն որոշվեն համապատասխան սահմանները Իսրայելի և կոնֆլիկտի մասնակից նրա արաբական հարևանների միջև: Այդ սահմանները պետք է հայտարարվեն վերջնականապես հաստատված և անխախտելի:

Մենք ելնում ենք այն բանից, որ իսրայելական զորքերի դուրսբերումն ավարտվելու պահից կոնֆլիկտի մասնակից արաբական պետությունների և Իսրայելի միջև կդադարի պատերազմի վիճակը, և կհաստատվեն խաղաղ հարաբերություններ: Ընդսմին, բոլոր կողմերը փոխադարձ պարտավորություններ կստանձնեն հարգելու միմյանց սուվերենությունը, տերիտորիալ ամբողջականությունը, անձեռնմխելիությունն ու քաղաքական անկախությունը, իրենց միջազգային վեճերը լուծելու խաղաղ միջոցներով: Հաստատված սահմանների երկու կողմում կարող էին իհարկե համապատասխան պետությունների համաձայնությամբ ստեղծվել ապառազմականացված գոտիներ՝ առանց որևէ մեկի

համար միակողմանի առավելությունների: Այդ գոտիների սահմաններում մի որևէ խիստ որոշակի ժամկետով կարող էին տեղաբաշխվել կամ ՄԱԿ-ի արտակարգ զինված ուժեր, կամ էլ ՄԱԿ-ի դիտորդներ:

Ըստ երևույթին, կոնֆերանսի ամփոփիչ փաստաթղթերը պետք է բովանդակեն նաև Տիրանայի նեղուցով և Աքաբայի ծովածոցով բոլոր երկրների, այդ թվում՝ Իսրայելի (պատերազմի վիճակի դադարեցումից հետո) նավերի անցման ազատության վերաբերյալ դրույթը, ինչպես նաև Եգիպտոսի հայտարարությունը Սուեզի ջրանցքով նավերի անցման մասին, որը ամբողջովին գտնվում է եգիպտական սուվերենության ներքո:

Խաղաղ կարգավորման պայմանների կատարումը, մեր կարծիքով, կարող էր երաշխավորված լինել, եթե դա ցանկանան պայմանավորվող կողմերը, ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի, հնարավոր է նաև առանձին տերություններ, օրինակ, Սովետական Միության, Միացյալ Նահանգների, Ֆրանսիայի, Անգլիայի կողմից: Երաշխավորող պետությունները կարող էին իրենց դիտորդներն ունենալ համապատասխան գոտիներում գտնվող ՄԱԿ-ի կոնտինգենտներում:

Ամենասեղմ ձևով սրանք են, ընկերնե՛ր, մեր նախնական պատկերացումները Մերձավոր Արևելքի արդարացի խաղաղության հնարավոր հիմունքների մասին: Մենք դրանք ոչ մեկին չենք պարտադրում, բայց օգտակար ենք համարում դրանց մասին ասել, ինչպես նաև, անշուշտ, պատրաստ կլինենք ծանոթանալու ուրիշների նկատառումներին:

Մենք արդեն ասել ենք, որ Մերձավոր Արևելքում խաղաղ կարգավորման կապակցությամբ համապատասխան պետությունները կարող էին քննության առնել այդ շրջանում սպառազինությունների մրցավազքի դադարեցմանը նպաստելու հարցը: Ընդհանրապես, զենքի միջազգային առևտրի պրոբլեմը, ըստ երևույթին, արժանի է կարծիքների փոխանակման:

Այժմ մի քանի խոսք սպառազինությունների սահմանափակման և զինաթափման պրոբլեմի մասին, որը XXV համագումարը սահմանեց որպես ժողովուրդների խաղաղության և անվտանգության ապահովման կենտրոնական պրոբլեմ:

Ես արդեն անդրադարձա ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման շուրջը վարվող սովետա-ամերիկյան բանակցություններին: Չափազանց կարևոր և հրատապ է միջուկային զենքի բոլոր փորձարկումներն արգելելու հարցը:

Դա բարերար ազդեցություն կունենար մեր մոլորակի կյանքի վրա ինչպես ուղղակի, կենսաբանական առումով, այնպես էլ բարոյաքաղաքական առումով:

Ոչ պակաս էական է նաև այն, որ սահմանափակվեին միջուկային սպառազինությունների որակական կատարելագործման, այդ զենքի նոր տեսակների երևան գալու հնարավորությունները:

Երկար ժամանակ միջուկային զենքի փորձարկումների լրիվ արգելման հակառակորդները վկայակոչում էին վերահսկողության հարցի լուծման դժվարությունը: Մենք այժմ էլ համոզված ենք, և դա հաստատվում է մասնագետների փաստարկներով, որ վերահսկողության համար միանգամայն բավարար են հայտնաբերման ազգային միջոցները: Այդուհանդերձ, համաձայնության ուղի հարթելու համար Սովետական Միությունը արևմտյան տերություններին ընդառաջելու լուրջ քայլ է արել: Միջուկային զենքի փորձարկումների լրիվ և ընդհանուր արգելման պայմանագրի մեր նախագծում այժմ նախատեսված է տեղում, կամավոր հիմունքով ստուգման հնարավորություն, եթե որևէ կասկած առաջանա այս կամ այն երկրի կողմից պայմանագրային պարտավորությունների կատարման հարցում:

Դա խելացի փոխզիջում է, որը հաշվի է առնում բոլոր կողմերի դիրքերը: Բնականաբար, միջուկային զենքի փորձարկումները լրիվ կդադարեն միայն այն ժամանակ, երբ պայմանագրի մասնակիցներ կդառնան բոլոր միջուկային տերությունները: Միայն այն ժամանակ պայմանագիրը իրոք կծառայի իր նպատակին:



Մենք ուշի-ուշով հետևում ենք, թե տարբեր երկրներում ինչպիսի վերաբերմունք է ցույց տրվում համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունների կողմից առաջինը միմյանց դեմ միջուկային զենք չգործադրելու վերաբերյալ Վարշավայի պայմանագրի երկրների առաջարկությանը: Ցանկալի կլիներ, որ արևմտյան երկրների և առաջին հերթին ՆԱՏՕ-ի անդամ երկրների պետական գործիչները մի լավ խորհեին այդ կարևոր առաջարկության իմաստի շուրջը, հրաժարվեին անխոհեմ, մեխանիկական այն մոտեցումից, որի համաձայն, եթե առաջարկությունը բխում է մյուս կողմից, նշանակում է այն վտանգավոր է և պետք է մերժել:

Արդեն ժամանակն է գիտակցել, որ այն քաղաքականությունը, որը անկյունաքար է դարձնում միջուկային զենքի կիրառման սպառնալիքը և նրա օգտագործման պատրաստակամությունը, գնալով ավելի վտանգավոր է դառնում մարդկության համար: Սովետական Միությունը միջուկային զենքի երևան գալու առաջին օրերից հանդես է գալիս նրա արգելման և ոչնչացման օգտին: Այդպես էր թե՛ այն ժամանակ, երբ ԱՄՆ-ը միջուկային զենքի մենաշնորհ ուներ, և թե այժմ, երբ ամենքն ընդունում են ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջուկային հզորության հավասարությունը:

Զինաթափման հարցերը քննարկելիս հաճախ են խոսում փոխադարձ օրինակի պրակտիկայի կիրառման, այսինքն պետությունների ինչ-որ միակողմանի դրական գործողությունների հնարավորության և օգտակարության մասին՝ հույս ունենալով, թե մյուսները կպատասխանեն այդ նույն ոգով: Հավանաբար, կարող է օգտագործվել նաև այդ մեթոդը: Բայց այն արդյունք կտա միայն փոխադարձ բարի կամքի և փոխադարձ վստահության առկայության դեպքում:

Բերեմ մի կոնկրետ օրինակ: Չորս տարի առաջ բանակցություններ սկսվեցին Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման շուրջը: Կրճատման շուրջը: Թվում է, թե ոչինչ ավելի տրամաբանական ու բնական չէր լինի, քան այն, որ, քանի դեռ բանակցությունները շարունակվում են, նրա մասնակիցները գոնե հրաժարվեին տվյալ շրջանում իրենց զինված ուժերի մեծացումից: ՍՍՀՄ-ը իր դաշնակիցների հետ բազմիցս առաջարկել է հենց այդ բանը: Մենք արդեն մի շարք տարիներ չենք ավելացնում Կենտրոնական Եվրոպայում մեր զինված ուժերի մարտական թվակազմը: Իսկ ինչպե՞ս արձագանքեցին մեր այդ օրինակին ՆԱՏՕ-ի երկրները: Նրանք շարունակեցին այստեղ մեծացնել իրենց զինված ուժերը:

Ինչպե՞ս վարվենք մենք այժմ: Միգուցե Սովետական Միությունը հետևի Արևմտյան տերությունների օրինակին: Բայց դա բացասական օրինակ է, և դրան հետևել, անկեղծորեն ասած, չէինք կամենա:

Այսօր մենք կրկին հայտարարում ենք. մենք պատրաստ ենք ընդհուպ մինչև Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման շուրջը պայմանավորվածության ձեռքբերումը չավելացնել այդ շրջանում մեր զորքերի թիվը: Այն պայմանով, իհարկե, որ այստեղ ՆԱՏՕ-ի ուժերը նույնպես չեն աճի: Ընդունեցեք այս առաջարկությունը, բանակցությունների հարգելի պարտնյորներ, ընդունեցեք որպես առաջին ռեալ քայլը զինված ուժերի կրճատման ճանապարհին: Իրավ, դրանից ոչ ոք չի տուժի, իսկ խաղաղության գործը, ժողովուրդների անվտանգության գործը միայն կշահի:

Ընկերնե՛ր: Շատ փորձություններ է տեսել սովետական ժողովուրդը: Նա անցել է պատերազմի բոցերի միջով, ճաշակել թե՛ կորուստների դառնությունը և թե հաղթանակների բերկրանքը: Այդ ամենի արժանի պարգևը այն պայծառ կյանքն է, որ ստեղծել են սովետական մարդիկ իրենց համար, իրենց սեփական ձեռքերով: Դրա արժանի պարգևը նաև այն 32 խաղաղ տարիներն են, որ մենք արդեն ապրել ենք պատերազմն ավարտվելուց հետո: Թերևս, դա խաղաղության ամենատևական ժամանակաշրջանն է մեր երկրի ամբողջ բազմադարյան պատմության մեջ: Բայց չէ որ միայն հենց 1945 թվականից հետո աշխարհում ավելի քան հարյուր անգամ պատերազմներ և պատերազմական կոնֆլիկտներ են բռնկել:

Սովետական ժողովուրդը գնահատում է իր կուսակցության խաղաղասի-

բական քաղաքականությունը։ Նա պատրաստ է ամեն բան անելու և կանի, որպեսզի խաղաղությունը դառնա կայուն, ամուր, հուսալի։ Եվ կարող եմ ձեզ ասել, ընկերնե՛ր, որ ինձ համար, ինչպես և մեզնից՝ կոմունիստներիցս յուրաքանչյուրի համար, որոնց կուսակցությունը, ժողովուրդը վստահել են զբաղվել երկրի արտաքին քաղաքական գործերով, չկա ավելի վսեմ պարտք և ավելի մեծ երջանկություն, քան աշխատել հանուն այդ գեղեցիկ, մարդասիրական նպատակի։

Թանկագին ընկերնե՛ր։ Սովետական արհմիությունների XVI համագումարը տեղի է ունենում մեր երկրի համար նշանակալի, հոբելյանական տարում։ Արդեն 60 տարի է, ինչ փողփողում է Ռուսաստանի աշխատավորների, կոմունիստների կուսակցության, լենինյանների կուսակցության բարձրացրած Հոկտեմբերի դրոշը։

Հոբելյանական տարին միշտ էլ հիշողությունների տարի է, արդյունքների ամփոփման տարի։ Բայց մենք՝ կոմունիստներս, հետադարձ հայացք ենք գցում ոչ միայն օրինական հպարտությամբ նշելու կատարվածի մասշտաբայնությունը, պատմական նշանակալիությունը։ Մենք անցյալը ընկալում ենք, որպես փորձի բազմահարուստ շտեմարան, որպես նյութ խորհրդածությունների համար, սեփական որոշումների և գործողությունների քննադատական վերլուծության համար։ Մենք անցյալից ներշնչանք ենք քաղում ներկա և գալիք գործերի համար։

Անցած տարվա և ընթացիկ տարվա առաջին երկու ամիսների արդյունքները վկայում են, որ երկիրը շարունակում է վստահորեն առաջ ընթանալ XXV համագումարի կուրսով։ Բայց առջևում մենք շատ, անչափ շատ գործեր ունենք։ Դա, իհարկե, ամբողջովին ու լիովին վերաբերում է նաև արհմիություններին, որոնց առաջնահերթ պարտականությունն է՝ ընթացիկ տարում ակտիվորեն պաշտպանել մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ծավալված մրցությունը։

Վստահ եմ, որ արհեստակցական միությունների համամիութենական կենտրոնական խորհրդի նոր կազմը կգտնվի այն քաղաքական պատասխանատվության բարձրության վրա, որ ամենքիցս պահանջում են ժամանակը, կյանքը, մեր շատ բարդ, բայց նաև շատ հետաքրքրական դարաշրջանը։

Վերջում ես ձեզ համար ունեմ մի ուրախալի հաղորդում։ Թույլ տվեք հրապարակել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը «ՍՍՀՄ արհեստակցական միությունները Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով պարգևատրելու մասին»։

(Համագումարի պատգամավորների և հյուրերի բուռն ծափահարությունների ներքո ընկեր Լ. Ի. Բրեժնևը ընթերցում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը ՍՍՀՄ արհեստակցական միությունները Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով պարգևատրելու մասին։ Դահլիճում բուռն օվացիա է բռնկում, երբ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը շքանշանը ամրացնում է ՀԱՄԿԽ–ի դրոշին։ Բոլորը ոտքի են կանգնում։ Բուռն օվացիա)։

Թույլ տվեք նաև նախագահությանը հանձնել Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի ողջույնը՝ ուղղված ՍՍՀՄ արհեստակցական միությունների XVI համագումարին։

Ձեզ, բոլորիդ, ընկերնե՛ր, և նրանց, ովքեր ձեզ պատգամավոր են ուղարկել այս համագումար, մաղթում եմ մեծ հաջողություններ աշխատանքում, քաջառողջություն և լավ, մարտական տրամադրություն։

(Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով։

Ներկաները ճառի եզրափակիչ խոսքերն ընդունում են փոթորկալի, երկարատև ծափահարություններով։ Համագումարի մասնակիցները և հյուրերը հոտնկայս ողջունում են ընկեր Լ. Ի. Բրեժնևին)։

(ՏԱՍՍ)

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՀԱՆՈՒՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ աշխատավորությունը, կուսակցական, կոմերիտական, արհմիութենական և հասարակական այլ կազմակերպություններ, մտավորականության հոծ զանգվածները, ոգեշնչված ՍՄԿԿ XXV համագումարի ստեղծարար գաղափարներով ու ծրագրային դրույթներով, ջանք չեն խնայում՝ առավել հուժկու թափով, ավելի կուռ կարգապահությամբ ու բանիմացությամբ անշեղորեն կենսագործելու հնգամյակի ընթացիկ տարվա պլանները, պատվով կատարելու սոցիալիստական մրցությամբ ստանձնած հայրենասիրական պարտավորությունները։

Հիրավի, հանրապետության բոլոր աշխատանքային կոլեկտիվները, կուսկազմակերպությունների ամենօրյա գործնական ղեկավարությամբ, ջանում են լավագույն ցուցանիշներով դիմավորելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյա պանծալի հոբելյանը։

Սոցիալիստական մրցության զանգվածային մասշտաբներն ու աշխատանքային ոգևորությունը վկայում են, որ ընթացիկ տարում մեծապես կհամալրվեն առաջավորների շարքերը։ Այսպես ենք ասում՝ ելնելով այն ուրախալի իրադրությունից, որ դեռևս անցյալ տարվա վերջին և ընթացիկ տարվա առաջին եռամսյակում հանրապետության երբեմնի ետ մնացող արտադրական շատ միավորումներ ու կազմակերպություններ հաստատուն տեղ գրավեցին առաջավոր ձեռնարկությունների ընտանիքում։ Այստեղ խոշոր դեր խաղաց աշխատավորական զանգվածների բուռն էնտուզիազմը և կուսկազմակերպությունների՝ սոցիալիստական մրցության ջոկատներին ցուցաբերած հմուտ ղեկավարությունը։

Մեր պատմական վերընթացի այս թեժ օրերին, երբ Սովետական մեծ Միության լենինյան եղբայրությամբ զոդված հարյուր միլիոնավոր մարդիկ միասնական կամքով ու կոմունիզմին անսահման նվիրվածությամբ և ստեղծագործական ակտիվությամբ գործադրում են ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալտնտեսական-կուլտուրական դարակազմիկ ծրագիրը, առանձնակի հրատապ նշանակություն են ստանում սովետական մարդկանց հոգևոր աշխարհի, բարոյական վարքագծի հետևողական հարստացումն ու կատարելագործումը։ Այս առումով ակներև կարևորվում են գաղափարախոսական ճակատի աշխատողների անելիքներն աշխատավորության, նոր սերնդի մարքս-լենինյան

աշխարհայացքը կազմավորելու, նրանց գաղափարապես զինելու՝ կուսակցու-
թյան XXV համագումարի հոյակապ կանխագծումները ոչ միայն խոր ըմբըռ-
նելու, այլև իրագործելու առումով:
Տասներորդ հնգամյակի անցած առաջին տարին իր ոգևորիչ արդյունքնե-
րով պերճախոս ապացույց եղավ, կուսակցության վարած քաղաքականության
ճշմարտացիության, շոշափելի, տարածական ու ռեալ ապացույց: Եվ ահա
ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը գնահատեցին հնգամյակի
առաջին տարվա ընթացքում գործադրած մեր աշխատավորների ջանքերը:
Սովետական Հայաստանի աշխատավորները մեծ ոգևորությամբ ու երախ-
տագիտությամբ ընկալեցին իրենց վաստակի բարձր գնահատումը՝ հանրապե-
տությանը ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և Համ-
ԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշի շնորհումը: Այդ մեծ պարգևի հանձ-
նումը վերածվեց կոմունիստական կուսակցության շուրջը հանրապետության
աշխատավորների սերտ համախմբվածության վառ ցույցի:
Կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի անխախտ
միասնության, լենինյան ուղիով աներեր ընթանալու նրանց վճռականության
փայլուն դրսևորումն է աշխատանքային և քաղաքական այն աննախընթաց
վերելքը, որն առաջացրել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխու-
թյան 60-ամյա հոբելյանի նախապատրաստությունը:
Այդ ջանքերի ճիշտ նպատակամղումը, արտադրության որակի ու արդյու-
նավետության բարձրացումը, խնայողության ռեժիմի խստագույն կիրառումը,
աշխատողների սիստեմատիկ որակավորումը և տնտեսության ղեկավար կադ-
րերի պարբերաբար վերապատրաստումը՝ ահա այն ոլորտները, որտեղ մեծ ու
պատասխանատու է հանրապետության գիտական մտավորականության շնոր-
հակալ դերը: Չէ որ այսօր, գիտատեխնիկական հեղափոխության արագընթաց
փոփոխությունների պայմաններում, ոչ միայն տնտեսության, այլև երկրի կա-
ռավարման ընթացքը չի կարող լինել իրոք գիտական, առանց գիտության ներ-
կայացուցիչների հոծ բանակի ակտիվ, ստեղծագործական մասնակցության:
Այո՛, կուսակցության XXV համագումարի գաղափարների ու դրույթների
անշեղ կենսագործումը թելադրում է մեզ՝ ամենուր հարցերն արծարծել ու լու-
ծել գիտականորեն, կոմպլեքսային եղանակով: Սա այն ոլորտն է, ուր շատ
ասելիք ու անելիք ունեն գիտահետազոտական և գիտամանկավարժական կադ-
րերը: Հետևաբար, խիստ անհրաժեշտ է պլանավորված օգտագործել արտադրա-
ուժի վերածված գիտությունը:
Գիտական ու քաղաքական գիտելիքների դասախոսներն ու պրոպագան-
դիստները կոչված են իրենց ուշադրության կիզակետում պահելու ՍՄԿԿ Կենտ-
կոմի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյա հո-
բելյանի վերաբերյալ ընդունած որոշումը: Ուստի, հարկավոր է առավել խոր
ու ավելի համակողմանի լուսաբանել մեր աշխատավորներին XX դարի մեծա-
գույն իրադարձության՝ մեծ Հոկտեմբերի համաշխարհային պատմական նշա-
նակություն ունեցող, մարդկության զարգացման ընթացքն արմատապես վե-
րափոխող պրոցեսների վեհ իմաստը: Պրոպագանդիստներից ու դասախոսնե-
րից պահանջվում է՝ առավել համոզչությամբ ու հռետորական վարպետու-
թյամբ դրվատել զարգացած սոցիալիզմի՝ մեր անպարտելի հայրենիքի աշ-
խարհաշեն ու հոյակապ հասումները:
Գաղափարախոսական ճակատի բոլոր աշխատողների անմիջական պարտքն
է՝ հանրապետության քաղաքային, ավանային ու գյուղական կոլեկտիվներում
սիստեմատիկաբար ու հանգամանորեն պրոպագանդել ՍՄԿԿ Կենտկոմի գըլ-
խավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի՝ սովետական արհմիությունների XVI հա-
մագումարում արտասանած բովանդակալից ճառի տեսական-քաղաքական
իմաստալի եզրակացությունները: Այդ ճառում համակողմանիորեն լուսաբան-
ված ՍՍՀՄ ներքին ու արտաքին քաղաքականության կարևորագույն հարցերն
ու խնդիրներն էապես առնչվում են բուրժուական ռեակցիոն պրոպագանդայի
դեմ տարվող մեր անզիջում գաղափարամարտի հրատապ խնդիրների հետ:
Հետևաբար, մեր հայրենիքի հետագա ծաղկմանը, աշխարհի խաղաղության



պահպանմանը նվիրված այդ ճառի դրույթների ոչ միայն պրոպագանդումը,
այլև դրանց անմիջական կիրառման սոցիալ-քաղաքական ու կազմակեր-
պական միջոցների մշակումն ու կենսագործումը մեր ամենօրյա գործունեու-
թյան առանցքն են:
Հայտնի է, որ վերջերս հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ «ՍՄԿԿ
XXV համագումարի որոշումների կատարման գործում քաղաքական բանավոր
ագիտացիայի դերի բարձրացման մասին»: Կուսակցական այդ կարևորագույն
փաստաթուղթը մեզ պարտավորեցնում է, բոլշևիկյան պրոպագանդայի հա-
րուստ ավանդույթների ու նշված բնագավառում կուտակված մասսայական
ագիտացիայի ուսանելի փորձից ելնելով, արդի պայմանների հաշվառմամբ,
մեր բանավոր խոսքի հմայքին նոր կորով հաղորդել, որը մեծապես կօգնի
պրոպագանդիստներին՝ աշխատավորական հոծ զանգվածներին՝ խոր համոզ-
չականությամբ լուսաբանելու կուսակցության քաղաքական կուրսը:
Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյա հո-
բելյանի նախապատրաստման այս օրերին, գաղափարախոսական մեր գործու-
նեության բոլոր օղակների ղեկավարների, պրոպագանդիստների ու դասախոս-
ների ուշադրությունը պետք է սևեռված լինի Հոկտեմբերի անմիջական ծնունդը
հանդիսացող, ՍՍՀՄ բազում ժողովուրդների ու ազգերի լենինյան եղբայրու-
թյան համակողմանի պրոպագանդման հարցը՝ շեշտելով, որ միայն սոցիալիս-
տական հեղափոխությունը հատեց «անիծյալ ազգային հարցի» գորդյան հան-
գույցը, որ միայն սոցիալիստական հեղափոխության հաղթանակով վերածըն-
վեցին ու անօրինակ թափով բարգավաճում և ծաղկում են ցարական Ռուսաս-
տանի երբեմնի կեղեքվող ազգերն ու ազգությունները: Մեր բանավոր ու գրա-
վոր պրոպագանդան կոչված է՝ խոր լուսաբանելու սովետական ազգերի ծաղկ-
ման ու մերձեցման, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական
կուլտուրայի աննախընթաց զարգացման, պատմության մեջ բազում ազգերի
ինտերնացիոնալիստական եղբայրության աննախադեպ դաշինքի անսասա-
նությունը:
Մասսաների ինտերնացիոնալ, հայրենասիրական դաստիարակության ու-
ժեղացման լայն հնարավորություններ է ընձեռում Ռուսաստանի հետ Արևելյան
Հայաստանի միավորման 150-ամյա հոբելյանի տոնակատարության նախա-
պատրաստությունը: Հարկավոր է բազմակողմանիորեն բացահայտել հայ և
ռուս ժողովուրդների, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամու-
թյան ակունքները, կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազ-
գային քաղաքականության, սովետական բոլոր ժողովուրդների համագործակ-
ցության, նրանց սերտ համերաշխության և փոխօգնության կենսահաստատ
մեծ ուժը: Այդ ամենին զուգընթաց, հարկ է ուժեղացնել բուրժուական գաղա-
փարախոսության, ռևիզիոնիզմի և դոգմատիզմի դեմ մղվող պայքարը: Անհրա-
ժեշտ է առավել հարձակողականորեն հանդես գալ բուրժուական գաղափարա-
խոսության ամեն տեսակի ներթափանցման դեմ, լենինյան սկզբունքայնու-
թյամբ պաշտպանել մեր հեղափոխական տեսության ամուր հիմքերը, համոզիչ
կերպով մերկացնել դասակարգային հակառակորդների կողմից մեր իրակա-
նությունը խեղաթյուրելու ոտնձգությունները:
Հայտնի է, որ վերջին ժամանակներս կապիտալի աշխարհի ջատագովները
նորից աղմկում են սոցիալիստական դեմոկրատիայի շուրջը: Ինչպես արհմիու-
թյունների XVI համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը, նրանք, կեղծ ռեկլամի մի-
ջոցով ստեղծում են սոցիալիստական երկրներում «ներքին օպոզիցիայի»
պատրանք: Հենց այդ միտումով էլ ճգնում են աղմկել, այսպես կոչված, «այլա-
խոհների» մասին, աշխարհով մեկ բարբաջել սոցիալիզմի երկրներում «մար-
դու իրավունքների խախտման» մասին և այլն:
Որքան էլ բուրժուական պրոպագանդիստները փորձեն խեղաթյուրել իրա-
կանությունը, նրանք չեն կարող թաքցնել ճշմարտությունը Սովետական Միու-
թյան և սոցիալիստական մյուս երկրների ձեռք բերած նվաճումների մասին:
Այսպիսին են անցյալի պատմության դասերը: Այդպես է նաև այս անգամ:

Պետք է հուժկու հակահարված տալ նրանց, փաստարկել, թե իրականում ո՛վ և որտեղ է ոտնահարում մարդու իրավունքները։

Մեր գաղափարական աշխատանքում առաջիկայում ևս կարևոր տեղ պետք է զբաղեցնի կուսակցության արտաքին քաղաքականության պրոպագանդան։ Հարկավոր է վառ և գունեղ ներկայացնել սովետական պետության արտաքին-քաղաքական խաղաղասիրական կուրսը, նրա դասակարգային, ինտերնացիոնալ էությունը, այն վճռական ու վիթխարի դերը, որը կատարում են կուսակցության Կենտկոմը, նրա քաղբյուրոն և անձամբ Լ. Ի. Բրեժնևը, միջազգային հարաբերությունների ասպարեզում ձեռք բերված դրական խոշոր տեղաշարժերի ոլորտում։

Հայտնի է, որ իր տիտանական գործունեության ընթացքում Վ. Ի. Լենինը, կուսակցության առջև ծառացած բարդ խնդիրները լուծելիս, բուռն կյանքի զարկերակին ունկնդիր, մշտապես խորհրդակցում էր Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի հետ։ Այդ գործելակերպն աշխատանքի լենինյան ոճի բնորոշ կողմերից մեկն է։ Մենք՝ կուսակցական գաղափարախոսական ճակատի մարտիկներս, անշուշտ, պարտավոր ենք հար և անվերջ խորհրդակցել սոցիալիստական մեծ հեղափոխության անմահ առաջնորդի՝ Լենինի հետ։ Այս օրերին, երբ ՍՍՀՄ բոլոր աշխատավորներն իրենց ստեղծարար սխրանքներով են նշանավորում մեր դարի մեծագույն հանճարի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 107-րդ տարելիցը, դա մեզ թելադրում է ավելի համակողմանի ու առավել անթերի կենսագործել ՍՄԿԿ XXV համագումարի պահանջը՝ մեր գործունեության բոլոր մարզերում հետևողականորեն արմատավորել աշխատանքի լենինյան ոճը։

Այդ ոճն ուսուցում է մեզ երկրի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական շինարարության, ինչպես և գաղափարախոսական ճակատամասի բոլոր ոլորտներում վարպետորեն կատարելագործել մեր գործունեության աշխատանքային ոճը։ Մեր ամենօրյա պարտքն է՝ գաղափարախոսական գործունեության ազդակները հմտորեն ի սպաս դնել ընթացիկ հոբելյանական տարվա պլանների ու սոցմրցմամբ ստանձնած պարտավորությունների իրագործմանը։

Գործել լենինաբար՝ նշանակում է ոչ միայն անզիջում պայքարել մարքսիզմ-լենինիզմի ամեն կարգի խեղաթյուրողների դեմ, սոցիալիստական մեր հասարակարգի ու ապրելակերպի բուրժուական զրպարտիչների դեմ, այլև ամենօրյա համառ ու ծրագրված աշխատանքով, աշխատավորության կոմունիստական դաստիարակությամբ, աշխատանքային բարձր կարգապահությամբ կյանքից արմատախիլ անել այն ամենը, ինչ խանգարում է մեր պատմական առաջընթացին։ Այո՛, լենինյան ոճը պահանջում է՝ բացահայտել մեր աշխատանքի ընթացքում եղած թերացումներն ու սխալները, անհապաղ վերացնել դրանք։ Այս ամենի մասին հանգամանորեն շեշտվեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում և ՀԿԿ XXVI համագումարում։

Այս առնչությամբ լուրջ անելիքներ ունեն կուսակցական լուսավորության ցանցի պրոպագանդիստները, «Գիտելիք» ընկերության երկու տասնյակ հազարից ավելի դասախոսները, մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի ու մասսայական ինֆորմացիայի այլ բնագավառների աշխատողները։

Լենինյան ոճի հատկանիշներից մեկն էլ այն է, երբ յուրաքանչյուր ոք իր ողջ գիտելիքներն ի սպաս է բերում սովետական մարդու բարեկեցության, հոգևոր ծաղկման, նոր ապրելակերպի հաստատման մեծ գործին։ Դժվար է գերագնահատել կուսակցության հավատարիմ գաղափարամարտիկների այն շնորհակալ աշխատանքը, երբ նրանք սատար են լինում կոմունիստական լուսավոր հասարակարգի կերտման գործին։

Աշխատանքի լենինյան ոճը պահանջում է մեզնից՝ բանիմացությամբ քննարկել ու հրապարակել հասարակագիտական բնույթի աշխատությունները և այն ամենը, ինչ ծառայում է նոր մարդու կազմավորմանը։ Վաղուց է հասել ժամանակը, որպեսզի կուսակցական կոմիտեները, գիտական խորհուրդները և ամբիոնները պատասխանատվության խոր գիտակցությամբ քննարկեն տպագրության պատրաստվող աշխատությունները։ Այլ կերպ, գրական խոտանը էապես խեղում է ընթերցողների հոգևոր աշխարհը, խանգարում նրանց գիտա-



կան աշխարհայացքի բյուրեղացմանը, աղարտում մարդկանց գեղագիտական ճաշակը։ Այս առթիվ հանգամանորեն խոսվեց ՀԿԿ Կենտկոմի նախորդ տարվա հոկտեմբերյան պլենումում, որի որոշումների կիրառումն իրոք կնպաստի առկա թերությունների վերացմանը։

Հոկտեմբերյան հեղափոխության հոբելյանական տարում, որը միաժամանակ 10-րդ հնգամյակի երկրորդ տարին է, լուրջ խնդիրներ են ծառացել նաև գաղափարական ճակատի աշխատողների առջև։ Մեր բանավոր ու գրավոր պրոպագանդայում անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել ՍՄԿԿ XXV համագումարի մշակած կարևորագույն տեսական պրոբլեմների պրոպագանդմանը, խորապես պարզաբանել կոմունիստական կուսակցության գործունեությունը, որի նպատակն է՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը, սովետական ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը, արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության աճը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների առավել արագ արմատավորումը։ Սոցիալիստական մրցության կազմակերպման առաջավոր փորձի տարածմամբ, կենդանի ու համոզիչ խոսքով հարկ է ոգեշնչել մասսաներին, մոբիլիզացնել նրանց աշխատանքային նորանոր սխրանքների։

Հոբելյանական տարին, իրոք, հանրագումարային է և մեզ հնարավորություն է ընձեռում՝ օրինական հպարտությամբ շեշտելու մեր նվաճումների պատմական նշանակալիությունը, մասշտաբայնությունը և, հասումների բնագիծը դիտելով որպես առաջընթացի ելակետ, քննադատաբար վերլուծելու մեր անվիճելի ձեռքբերումները։ Այս խնդիրների լուսաբանումը գաղափարական աշխատանքում առաջնակարգ կարևորություն է ստանում։ Մեր պրոպագանդայի բոլոր միջոցների կարևորագույն խնդիրն է՝ բազմակողմանիորեն բացահայտել մեր անցած ուղու հերոիկան, ցույց տալ 20-րդ դարի խոշորագույն իրադարձության՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության՝ վճռական նշանակությունը մեր երկրի ժողովուրդների կյանքում, վիթխարի ազդեցությունը մարդկության զարգացման հետագա ընթացքի վրա։

Հայ ժողովրդի օրինակով, իսկ դա հատկանշական է նաև եղբայրական մյուս հանրապետությունների համար, ցույց տալ կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ռեալ պտուղներն ազգային և սոցիալական ազատագրության կազմակերպման, տնտեսության, գիտության ու կուլտուրայի հզոր վերելքի ապահովման բնագավառում, ազգերի և ժողովուրդների իրավական ու գործնական հավասարության, նրանց միջև անխորտակելի բարեկամության հաստատման մարզում։

Անհրաժեշտ է համոզիչ փաստերով ցույց տալ, որ մոտ 60 տարիների ընթացքում Սովետական Հայաստանում կատարվածը հրաշք չէր, այլ սոցիալիզմի պայմաններում մեր աշխատավորության ստեղծագործական խիզախումների, կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարության, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու համատեղ աշխատանքի արգասիքը։ Հանգամանորեն բացահայտել հանրապետության աշխատավորության մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, կոմունիստական կուսակցության շուրջը նրա համախմբման վեհ իմաստն ու նշանակությունը, որպես մեր կուսակցական կազմակերպությունների երկարամյա գործունեության խոշոր հաղթանակ և գալիք առաջընթացի վճռական գրավական։

Քաղաքական, տնտեսական, սոցիալական ու գաղափարախոսական այս որակական տեղաշարժերի հանրագումարն է, որ մենք սովորաբար արտահայտում ենք վերածնունդ բառով։ Ուրեմն, անհրաժեշտ է բազմակողմանիորեն գրվատել հայ ժողովրդի վերածնության պատմական նշանակությունը որպես օրինակ աշխարհի շատ ու շատ ժողովուրդների համար։ Այս ամենն ամբողջ կարևորությամբ շեշտվեց ինչպես Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումում, այնպես էլ ընթացիկ տարվա մարտին տեղի ունեցած հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում։

Խիստ ուշագրավ է, որ սովետական արհմիությունների XVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի խորապես բովանդակալից ճառը լայն տարածում գտավ աշխարհով մեկ: Այդ ճառում մեծագույն խորաթափանցությամբ և գիտական ճշգրտությամբ սահմանված են կուսակցության ու պետության ներքին և արտաքին քաղաքականության արդիական արմատական խնդիրները: Սկզբից մինչև վերջ այն տոգորված է կուսակցական հոգատարությամբ մեր հայրենիքի հետագա ծաղկման, սովետական մարդկանց կյանքի բարելավման, աշխարհի խաղաղության պահպանման և ամրապնդման նկատմամբ: Մեր գաղափարախոսական ճակատի բոլոր օղակների, գրավոր ու բանավոր պրոպագանդայի բոլոր միջոցների հրատապ խնդիրն է՝ անհապաղ ձեռնամուխ լինել Լ. Ի. Բրեժնևի ճառի պրոպագանդմանը աշխատավորական լայն զանգվածների շրջանում:

«Հասուն, զարգացած սոցիալիզմի ստեղծումը,— իր ճառում ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը,— նորովի է դրել երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր զարգացման շատ հարցեր»: Դրանք իրենց արտացոլումը գտան կուսակցության XXIV և XXV համագումարների որոշումներում: Այժմ կուսակցության ու ժողովրդի պրակտիկ գործունեության տարբեր բնագավառներում խոր վերակառուցումներ են տեղի ունենում, որոնք կոչված են ապահովելու կոմունիստական շինարարության ստրատեգիայի կենսագործումը:

Այսօրվա մեր իրականությունը հատկանշական է նրանով, որ կուսակցության տնտեսական քաղաքականության առանցքը պայքարն է հանուն հանրային արտադրության արդյունավետության, հանուն ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում ու մարզերում աշխատանքի բարձր որակի:

Պետք է խորապես բացահայտել, որ արդյունավետության ու որակի պահանջը հավուր պատշաճի լոզունգ չէ, այլ արտահայտում է երկրի սոցիալ-տնտեսական, քաղաքական, հոգևոր, դեմոգրաֆիական զարգացման օրինաչափությունները, սոցիալիզմի առավելությունների ավելի լիակատար դրսևորման հնարավորությունները: Հետևաբար, պետք է բոլոր աշխատավորներին ներարկել նախաձեռնության և սոցիալիստական մրցության ծավալման անհրաժեշտության բարձր գիտակցությունը, չանտեսելով, որ մեր ժամանակներում սոցիալիստական մրցությունը որակական նոր գծեր, նոր յուրահատկություններ է ձեռք բերել, որ այն այժմ անբաժանելի է գիտատեխնիկական առաջընթացից, որ առավել շատ է առնչվում արդյունավետության և որակի պրոբլեմներին, որը միտում է առավելագույն ժողովրդատնտեսական վերջնական արդյունքների նվաճմանը և սերտորեն աղերսվում է հանդիպական պլանների հետ, որոնք մարմնավորում են զանգվածների նախաձեռնությունն ու անձնվեր աշխատանքը:

Գաղտնիք չէ, որ մեր տարբեր օղակներում սոցիալիստական մրցության կազմակերպումը շատ թերություններ ունի: Պրոպագանդայի բոլոր մարմինների պարտքն է՝ պայքար հայտարարել այդ գործում եղած ձևամոլությանն ու շաբլոնին, անպտուղ աղմկարարությանն ու բյուրոկրատիզմին: Պետք է առավել օգտվել սոցիալիստական մրցության դաստիարակչական դերից, օգնել կուսակցությանը՝ բարձրացնելու աշխատանքային կոլեկտիվների ակտիվությունը: Այստեղ է, որ քաղաքական ու տնտեսական հասկացությունները թարգմանվում են առօրյա պրակտիկայի լեզվով, հիմնականում ձևավորվում մարդկանց վերաբերմունքը կյանքի, հասարակության հանդեպ:

Բայց այս ամենի իրագործման առաջին պայմանը կյանքի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ քաղաքական-գաղափարական աշխատանքի սերտ կապն է: Հայտնի է, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի (1976 թ.) հոկտեմբերյան պլենումն ուշադրությունը բևեռեց հենց այդ կողմի վրա: Պլենումն անհրաժեշտ գտավ.

առաջին. ապահովել տեսության խոր ուսումնասիրումը, մարքսիզմ-լենինիզմի՝ որպես միասնական ինտերնացիոնալ ուսմունքի, հիմնարար սկզբունքների, կուսակցության պատմական փորձի, տեսության բնագավառում նեոդրված այն ստեղծագործական ավանդի յուրացումը, որ բովանդակում են



ՍՄԿԿ վերջին համագումարների և պլենումների որոշումները, ընկեր Լ. Ի. Բրեժնևի և կուսակցության մյուս ղեկավարների ելույթները, միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերը:

երկրորդ. ապահովել կուսակցության տեսության ու քաղաքականության ուսումնասիրման սերտ կապը և օրգանական միասնությունը կոմունիստական շինարարության արդի պրակտիկայի հետ, ՍՄԿԿ միջազգային գործունեության, նրա գաղափարական պայքարի պրակտիկայի հետ:

Եվ, վերջապես. հասնել այն բանին, որպեսզի ձեռք բերած գիտելիքներն ամենուր լրիվ կենսագործվեն և մեր հասարակության զարգացման պրոբլեմների լուծման խնդրում դառնան գործունեության ուղեցույց: Այլ կերպ ասած՝ հարկավոր է հետևողականորեն իրականացնել գաղափարական աշխատանքի գործադրման եռմիասնության լենինյան սկզբունքը՝ քաղաքական գիտելիքներն ստեղծագործաբար վերածել խոր համոզմունքների, իսկ համոզմունքները՝ կոնկրետ գործերի: Հասկանալի է, որ այս խնդիրների հաջող լուծումը դաստիարակչական աշխատանքի բոլոր բնագավառներում ենթադրում է հասարակական կյանքի երևույթների, փաստերի և անհատների գործունեության վերլուծության նկատմամբ կուսակցականության, դասակարգայնության լենինյան սկզբունքների հետևողական կիրառում: Դա է հեղափոխական տեսության, կոմունիստական գաղափարախոսության անաղարտության երաշխիքը: Սկզբունքային դասակարգային և կուսակցական մոտեցումն է նաև բուրժուական պրոպագանդայի, աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, գաղափարական դիվերսիաների դեմ մղվող մեր հարձակողական պայքարի հաջողության առհավատչյան:

Ընկ. Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում ասաց. «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին, ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ: Այդպիսի դիրքի մշակումը բարոյական դաստիարակության խնդիրն է»: Մեր գաղափարական գործունեության կենտրոնում նախ և առաջ սովետական մարդն է, նրա բարոյական կերպարի կազմավորումը: Եվ դա հասկանալի է, քանի որ մեր հասարակարգի հզորության ուժը, կոմունիստական շինարարության հաջողության երաշխիքը մասսաների բարձր գիտակցականությունն է:

Արդի պայմաններում գաղափարական գործունեության արդյունավետության բարձրացման ուղին, ինչպես նշվեց կուսակցության XXV համագումարում, այդ դաստիարակության ամբողջ գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցումն է, այսինքն՝ գաղափարա-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնությունը՝ հաշվի առնելով աշխատավորների զանազան խմբերի սոցիալ-հոգեբանական առանձնահատկությունները: Հանրահայտ է, որ մարդու հոգեբանությունն ավելի դանդաղ է վերափոխվում, քան նրա նյութական կացությունը: Կուսակցությունը, սակայն, անում է ամեն ինչ, որպեսզի նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարա-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացմամբ: Հակառակ դեպքում, ինչպես նշվեց XXV համագումարում, կունենանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ: Այս հարցերը լիովին արծարծվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ). պլենումում:

Հանրապետության կուսակցական կազմակերպություններն այդ պլենումից հետո անցած ժամանակաշրջանում ակներևաբար ուժեղացրել են պայքարը բացասական երևույթների դեմ: Սակայն Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կատարվածը դեռևս բավարար չի համարում: Մեր խոսքը սոցիալիստական հասարակարգին խորթ և անհարիր երևույթների դեմ համընդհանուր ճակատ ստեղծելու անհրաժեշտության մասին է: Կարևորն այն է, որպեսզի վարչական միջամտությունը օրգանապես զուգակցվի համոզմունքի ուժով մարդկանց դաստիարակությանը: Այստեղ անհրաժեշտ են համատեղ, կոորդինացված գործողություններ՝ կուսակցական, պետական, վարչական մարմինների աշխատանքից սկսած մինչև մեր գիտնականների, դասախոսների ջանքերը:

Հարկավոր է նաև ուժեղացնել պայքարն աշխատանքային կարգապահության խախտումների, անտնտեսվարության և թափթփվածության դեմ։ Պետք է բոլոր միջոցներով անհաշտ իրադրություն ստեղծել նրանց շուրջ, ովքեր չեն ուզում ենթարկվել կարգ ու կանոնին, ովքեր աղայական վերաբերմունք են դրսևորում հանրօգուտ աշխատանքի նկատմամբ։

Կոմունիստական բարոյականությունը ներառնում է համամարդկային բարոյական նորմերը, որոնք մշակվել են ժողովրդական զանգվածների կողմից սոցիալական ճնշման ու բարոյական արատների դեմ հազարամյակներ տևող պայքարի ընթացքում։ Մեր կուսակցությունն իր ծրագրի և կանոնադրության մեջ շարադրել է կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի նորմերը, որոնք ըստ էության սովետական մարդկանց ապրելակերպի սկզբունքներն են։

Կոմունիզմ կառուցողի բարոյական նորմերի պրոպագանդումը մշտապես պետք է լինի մեր գաղափարական աշխատանքի կիզակետում, այն մեր չափանիշն է սովետական ապրելակերպի արմատավորման համար ծավալված սկզբունքային, անզիջում պայքարում։ Ակներև է, որ սոցիալիստական բարոյականության նորմերից ամեն մի շեղում հակասում է մեր հասարակարգի բուն էությանը։

Աշխատանքը կարելի է արդյունավետ համարել միայն այն դեպքում, եթե գաղափարական ճակատի աշխատողը կարողանում է մարդկանց ներարկել քաղաքացիականության բարձր զգացում, սովետական հայրենասիրության վսեմ հատկանիշներ, մեր ընդհանուր գործի հանդեպ խոր համոզմունք, կոմունիզմի հաղթանակի պայքարի կամք ու վճռականություն, մարքսիզմ-լենինիզմի, ինտերնացիոնալիզմի իդեալներին անսահման նվիրվածություն։

Այսօր առաջնահերթ նշանակություն է ստանում մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության ուժեղացումը։ Անհրաժեշտ է հմուտ կերպով բացահայտել սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամության անխախտ միասնության հիմքերը, ցույց տալ ձևով ազգային, ոգով ինտերնացիոնալիստական, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկման ու մերձեցման օրինաչափությունը, արմատական շահերի, նպատակների և մարքս-լենինյան գաղափարախոսությամբ զոդված աշխատավոր մարդկանց սոցիալիստական մեծ եղբայրության ամուր դաշինքը։

Ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը սերտորեն շաղկապված է գաղափարա-դաստիարակչական աշխատանքի մյուս բոլոր ուղղությունների՝ աշխատանքային, բարոյական, գիտա-աթեիստական, իրավական, գեղագիտական դաստիարակության հետ։

Կոմունիստական կուսակցությունը բարձր է գնահատում գաղափարական ճակատի աշխատողների կարևորագույն դերը, եռանդուն ջանքերը, որոնք մասսաներին են հաղորդում բոլշևիկյան ոգեշունչ խոսքը, իրազեկ դարձնում գիտատեխնիկական, հասարակական-քաղաքական նորույթներին։ Այժմ գաղափարական աշխատանքը կարող է արդյունավետ, մոբիլիզացնող և ներգործուն լինել միայն այն դեպքում, եթե այն լիովին համապատասխանի կուսակցության և ժողովրդի այսօր իրականացվող սոցիալ-տնտեսական վիթխարի ծրագրի մասշտաբայնությանը, մեր վերընթաց զարգացման թափին, գտնվի կուսակցության XXV համագումարի պահանջների մակարդակին։

Հոբելյանական տարում երկրով մեկ նոր ուժ է ստանում մեծ տոնի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը։ Սովետական մարդիկ իրենց տաղանդով, մտքի և բազկի զորությամբ օրեցօր բազմապատկում են հայրենիքի նյութական ու հոգևոր հարստությունները, վճռականությամբ հավաստում հարազատ կուսակցությանը, որ իրենք հետայսու ևս աներեր կընթանան մեծ Հոկտեմբերի հարթած ուղիով, մեծ Լենինի նշած ուղիով։

# ՕԲՅԵԿՏԻՎ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ

**Ա. Մ. ՄԻՆԱՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
**Վ. Պ. ԿՈԽԱՆՈՎՍԿԻ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

**Վ. Ի.** ԼԵՆԻՆԻ ՏԵՍԱԿԱՆ հարուստ ժառանգության կարևորագույն մասերից մեկը մատերիալիստական դիալեկտիկան է։ Դիալեկտիկան հասկանալով որպես իմացության տրամաբանություն և տեսություն, Վ. Ի. Լենինն այն անվանում էր «մարքսիզմի ոգի», բնութագրում որպես մարքսիստական տեսության արմատական տեսական հիմք։ Դրա հետ մեկտեղ, նա ամբողջ ուժով շեշտում էր դիալեկտիկայի հսկայական դերը բանվոր դասակարգի աշխարհայացքի և հեղափոխական-պրակտիկ գործունեության մեջ։

Այն հսկայական հետաքրքրությունը, որ Վ. Ի. Լենինը շարունակ ցուցաբերում էր դիալեկտիկայի պրոբլեմների նկատմամբ, պայմանավորված էր մարքսիստական փիլիսոփայության հետագա զարգացման անհրաժեշտությամբ, սոցիալիստական հեղափոխության տեսության, ստրատեգիայի ու տակտիկայի փիլիսոփայական հիմունքների մշակման պահանջմունքներով, մարքսիզմին դավաճանած և դիալեկտիկան սոփեստությամբ ու էկլեկտիցիզմով նենգափոխած II Ինտերնացիոնալի տեսաբանների փիլիսոփայական ռևիզիոնիզմի դեմ պայքարի շահերով։

Փիլիսոփայական տետրեր, Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ և լենինյան այլ երկերում մշակված դիալեկտիկայի վեհ սկզբունքները հրատապ են, կենսունակ ու ներգործուն նաև այսօր։ Այդ սկզբունքների համակողմանի ու հետևողական կիրառման վառ օրինակ են ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, կուսակցական մյուս փաստաթղթերը։

Վ. Ի. Լենինը բազմիցս շեշտել է, որ անհնար է փաստարկված ձևով մերկացնել տարբեր կարգի նահանջները մարքսիզմից և համոզիչ ցույց տալ նրանց սխալականությունը, եթե չբացահայտենք և ցույց չտանք այդ սխալների տեսական (տրամաբանական, իմացաբանական, մեթոդոլոգիական) արմատները, «...որովհետև չի կարելի ոչ մի սխալ, այդ թվում և քաղաքական սխալ պարզել իր համար, եթե չգտնես այն մարդու սխալի տեսական արմատները, ով անում է այդ սխալը, ելնելով որոշ, նրա կողմից գիտակցորեն ընդունվող դրույթներից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 98)։ Ահա ինչու մատերիալիստական դիալեկտիկայի տեսության՝ որպես գիտական հետազոտության և իրականության հեղափոխական վերափոխման մեթոդի մշակման անհրաժեշտություն, թելադրվում է նաև գաղափարական պայքարի շահերով։ Ինչպես շեշտվեց կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ, թշնամական գաղափարական դիվերսիաներին ժամանակին

թյունը։ «Խիստ կուսակցականությունը,— նշում էր Վ. Ի. Լենինը,— բարձր զարգացած դասակարգային կռվի ուղեկիցն է ու հետևանքը։ Եվ, ընդհակառակը, դասակարգային բաց ու լայն կռվի շահերի տեսակետից անհրաժեշտ է խիստ կուսակցականության զարգացումը» (Երկեր, հ. 10, էջ 80—81)։ Իսկ դա նշանակում է, որ կուսակցականության հետևողական կիրառումը պահանջում է դասակարգային հստակ մոտեցում իրականության ուսումնասիրմանը։ Մեր կուսակցությունը միշտ էլ մեծ տեղ է տվել այդպիսի մոտեցման անհրաժեշտությանը։ Այդ բանն ամբողջ ուժով դրսևորվում է ՍՄԿԿ XXV համագումարի նյութերում և կուսակցական մյուս փաստաթղթերում։

Կուսակցականությունն էլ հենց աշխարհայացքի դասակարգային ուղղվածությունն է, որը պայմանավորված է դասակարգային հակամարտությամբ, պաշտպանում է իր դասակարգի շահերը։ Հետևաբար, աշխարհայացքի ուղղվածությունը դասակարգային հասարակարգում ոչ թե ինչ-որ մի կոնյունկտուրային նկատառում է կամ «պրոպագանդիստական տրյուկ», այլ օբյեկտիվորեն օրինաչափ դասակարգային միտում, որն արտահայտում է այս կամ այն դասակարգի և սոցիալական այլ խմբերի շահերը։

Ահա ինչու «Կարևոր է, որ հետևողականորեն պահպանվեն գիտության մեջ կուսակցականության սկզբունքները, որ վճռական հակահարված հասցվի արտասահմանյան գաղափարական հակառակորդների աջ օպորտունիստական և ձախ հայացքներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 110)։ Կուսակցականության սկզբունքի ճիշտ ըմբռնման ու հետևողական կիրառման կարևորությունն ու հրատապությունը մեր օրերում պայմանավորված է այն հանգամանքով, որ «...թե՛ աջ և թե՛ «ձախ» ռևիզիոնիզմն ամենևին էլ անգործության չի մատնված, և կոմունիստական շարժման մարքս-լենինյան հիմքերի համար դրանք խեղաթյուրելու կամ խարխլելու փորձերի դեմ մղվող պայքարը մնում է բոլորի ընդհանուր խնդիրը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 46)։

Խոսելով օբյեկտիվության և կուսակցականության սկզբունքների հարաբերակցության մասին, հարկավոր է շեշտել, որ այդ սկզբունքները հենց միայն դիալեկտիկական մատերիալիզմում են միասնության մեջ գտնվում։ Իսկ բուրժուական փիլիսոփայության և սոցիոլոգիայի մեջ դրանք իրարից հեռու են, սկզբունքորեն հակասում են միմյանց, քանի որ դարն ապրած, ռեակցիոն դասակարգի շահերն արտահայտող տեսության կուսակցականությունը, բնականաբար, անկարող է հանգեցնել իրականության օբյեկտիվորեն ճիշտ արտացոլման։

## II

Քննարկման օբյեկտիվության լենինյան սկզբունքի մեթոդոլոգիական և աշխարհայացքային նշանակությունը գիտական իմացության և պրակտիկայի համար հսկայական է։ Առանձնապես կարևոր է ճիշտ հասկանալ և հետևողականորեն կիրառել այդ սկզբունքը տեսության զարգացման և հասարակության սոցիալիստական վերակառուցման խնդիրների լուծման նկատմամբ։

Քննարկման օբյեկտիվության պահանջի միտումնավոր անտեսումը կամ կեղծումը ժամանակակից աջ և «ձախ» ռևիզիոնիստների մոլորությունների տրամաբանական արմատներից և «մեթոդոլոգիական հիմքերից» են՝ բուրժուական սոցիոլոգների բազմաթիվ «ուլտրաժամանակակից» կոնցեպցիաների մշակման նպատակով։ Այդ մոլորությունների ու կոնցեպցիաների հետևողական քննադատությունն ու մերկացումը մեր գաղափարական ճակատի կարևորագույն խնդիրն է։ Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «...լարվածության թուլացման պայմաններում ավելի ու ավելի մեծ պահանջներ են ներկայացվում մեր գաղափարական աշխատանքին։ Մեր պրոպագանդան ինչպես երկրի ներսում, այնպես էլ արտասահմանում, պետք է զգայուն կերպով արձագանքի աշխարհում կատարվող փոփոխություններին, պետք է լինի մատչելի և համոզիչ»։

Ժամանակակից բուրժուական փիլիսոփայությունը և փիլիսոփայական ռևիզիոնիզմը բացահայտորեն հռչակում են իրենց «անկուսակցականությունը», «օբյեկտիվությունը», որն իբր վեր է փիլիսոփայական հիմնական ուղղություններից, դասակարգային, կուսակցական շահերից։ Բայց նման «անկուսակցականությունն» իրականում ամենասովորական կուսակցականություն է՝ միայն կեղծավորաբար քողարկված, քանի որ այն միշտ արտահայտում է այս կամ այն դասակարգի միանգամայն որոշակի շահերը։

Բուրժուական փիլիսոփաներն ու սոցիոլոգները շատ են խոսում հասարակության պատմության վերլուծության նկատմամբ «գիտական» մոտեցման մասին, կոչ են անում «օբյեկտիվորեն» քննարկել սոցիալական զարգացումը, ճանաչել դրա օրենքները։ Դա՝ խոսքով։ Իսկ ի՞նչ է ստացվում իրականում։ Այն, որ, օրինակ, փիլիսոփա, ճիզվիտ Բրուները ամենայն վճռականությամբ պնդում է, որ «ոչ մի պատմական օրենք լինել չի կարող» (A. Brunner. Die Grundfragen der Philosophie. Freiburg, 1956, S. 178)։

Պատմական պրոցեսի վերաբերյալ դատողությունները վերջին հաշվով նեոտոմիստներին հանգեցնում են այն հետևության, որ «աստված է իշխում պատմության մեջ», և պատմության յուրաքանչյուր փիլիսոփա, ով ցանկանում է հավատարիմ լինել քրիստոնեական հավատի ոգուն, պարտավոր է լրջորեն վերաբերվել այդ փաստին։ Քանի որ պատմությունն այլ բան չէ, քան «աստվածային կամքի» իրականացում, ապա նշանակում է «մարդկային պատմությունն առանց նախախնամության անբացատրելի է»։ Բայց, քանի որ պատմությունը գերբնական պրոցես է, «ավելի շուտ աստվածային, քան մարդկային», ապա, հետևաբար, «ապագան մեր ձեռքում չէ»։ Դրանով իսկ «գիտականորեն» հիմնավորվում է խոնարհության, հնազանդության և քաղաքական իներտության անհրաժեշտությունը։ Ինչպես տեսնում ենք, իսպառ բացակայում է օբյեկտիվ վերլուծության որևէ հետք, ցայտուն արտահայտված կուսակցականությամբ հանդերձ, կուսակցականություն, որն արտացոլում է տիրապետող, շահագործող դասակարգի շահերը։

Եթե նույնիսկ բուրժուական փիլիսոփաներն ընդունում են պատմության «իմաստի», օրենքների առկայությունը, ապա այդ օրենքները հայտարարում են անճանաչելի։ Պատմությունը,— գրում է, օրինակ, էկզիստենցիալիստ Կ. Յասպերսը,— ունի խոր իմաստ, բայց «այն անմատչելի է մարդկային իմացությանը»։

Նեոպոզիտիվիստ Կ. Պոպերի տեսակետից, հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքներ գոյություն չունեն, մենք ինքներս ենք դրանք ստեղծում որպես «աշխատանքային մոդելներ»։ Պատմության մեկնության էությունը հանգեցնելով պատմական իրադարձությունների՝ որպես ունիկալ և չկրկնվող գոյացումների հասարակ նկարագրության, Կ. Պոպերը դա հիմնավորում է նրանով, որ «պատմության օրենքներ լինել չեն կարող»։ Ընդհանրացումը վերաբերում է հետաքրքրությունների միանգամայն այլ շրջանի, որը պետք է խստորեն անջատված լինի առանձին իրադարձությունների և պատմության պատճառական կապերի բացակայության նկատմամբ եղած հետաքրքրություններից։

Ժխտելով քննարկման օբյեկտիվության սկզբունքը, Կ. Պոպերը, ինչպես և մի շարք այլ բուրժուական փիլիսոփաներ (Կ. Բեկերը, Չ. Բիրդը և ուրիշներ) կոչ են անում ողջ անցած պատմությունը վերափոխել ներկայիս տեսանկյունից, այսինքն՝ կանգնում են պրեզենտիզմի դիրքերում։ Վերջինը նրանք հասկանում են խիստ սուբյեկտիվիստորեն, քանի որ պատմության իմացության՝ նրանց կարծիքով «գիտական» մեթոդը պատմաբանների ժամանակակից ձգտումների և սուբյեկտիվ ապրումների պրոյեկցումն է անցյալի մեջ։ Այսպես, Պոպերը գրում է, որ «չի կարող գոյություն ունենալ անցյալի պատմություն, ինչպես այն իրականում կատարվել է, հնարավոր են միայն պատմական տարբեր մեկնաբանումներ, ըստ որում դրանցից ոչ մեկը վերջնական չէ, և յուրաքանչյուր սերունդ իրավունք ունի առաջարկելու իր սեփական մեկնաբանումը։ Սակայն նա ո՛չ միայն իրավունք ունի առաջադրելու իր մեկնաբանումը, այլև որոշ իմաստով անգամ պարտավոր է այդ բանն անել» (K. R. Popper. The Open Society and its Enemies, vol. II, London, 1945, p. 255)։

Նման դատողություններն անխուսափելիորեն հանգեցնում են ծայրահեղ ռելյատիվիզմի և սուբյեկտիվիզմի, այն հետևության, որ յուրաքանչյուր մարդ ստեղծում է պատմական անցյալի իր պատկերը, որը հավասարապես օրինաչափական է։ Պրեզենտիզմի արմատական արատն ինչպես սուբյեկտիվիզմն է, այնպես էլ անցյալի «մոդեռնացումը», այսինքն՝ այն, որ «ներկայի» օրինաչափությունները մեխանիկորեն, առանց որևէ ուղղումի ու ձևափոխման փոխադրվում են անցյալը։ Պրեզենտիստական (ինչպես և մյուս բոլոր բուրժուական) կոնցեպցիաների իդեալիզմն ու մետաֆիզիկականությունը՝ ահա այն գլխավոր պատճառը, որ դրանց ոլորտում անհնար է կիրառել քննարկման օբյեկտիվության սկզբունքը։

Ժամանակին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը քննադատում էին գերմանական «ճշմարիտ սոցիալիստներին» այն բանի համար, որ «գերմանական բոլոր գաղափարախոսների նման» նրանք «որպես ինչ-որ համանշանակ բան, շարունակ գրական պատմությունը շփոթում են իրական պատմության հետ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 470)։ Նույնպիսի շփոթում բնորոշ է նաև արդի բուրժուական փիլիսոփայության և սոցիոլոգիայի ներկայացուցիչներին։ Այսպես, անգլիական նեոհեգելական Ռ. Կոլինգվուդի համար պատմության փիլիսոփայությունը պատմագրության, պատմական իմացության տեսությունն է, այլ ոչ թե պատմության՝ որպես պատմական իմացությունից անկախ, օբյեկտիվորեն գոյություն ունեցող ռեալ պրոցեսի տեսություն։ Այստեղ նույնպես առկա է իսկական օբյեկտիվության պահանջի ամենակոպիտ խախտումը։

Իտալական նեոհեգելական Բ. Կրոչեն իր պատմական կոնցեպցիայի էությունն արտահայտել է հետևյալ դրույթում. «Ոգին ինքը տեսություն է, և մոմենտներից յուրաքանչյուրում այն միաժամանակ պատմական գործոն է և նախորդ պատմության արդյունք. այսպիսով, ոգին իր հետ կրում է իր պատմությունը, որը համընկնում է նրա հետ» (B. Croce. Zur Theorie und Geschichte der Historiographie. Tübingen, 1950, S. 15)։ Դրանով իսկ միստիֆիկացվում է ռեալ պատմությունը, քանի որ իբրև նրա սուբստրատ է հայտարարվում «բացարձակ ոգին», «գաղափարը», որը Կրոչեի մոտ համընկնում է «ինդիվիդների», առանձին մարդկանց հետ։

Իրական պատմությունը, ըստ Կրոչեի, պատմական գոյը վերջին հաշվով նույնն է, ինչ որ վերականգնումը պատմաբանի մտքում. պատմական ռեալությունը գոյություն չունի նրա ճանաչումից անկախ։ Պատմագրության մեջ «ոգին» ճանաչում է ինքն իրեն, հաստատելով միաժամանակ և՛ իր ռեալությունը, և՛ անցյալի մասին գիտելիքի օբյեկտիվությունը։ Դրանով իսկ պատմական պրոցեսը վերջին հաշվով միստիֆիկացվում է, քանի որ պատմությունը Կրոչեի մոտ այլ բան չէ, քան աստվածային նախախնամության՝ պատմական պրոցեսում մարմնավորվող այդ «իմմանենտ բանականության» սուռոգատ։ Թեև Կրոչեն իր ուսմունքն անվանել է «բացարձակ պատմականություն», սակայն այդ ուսմունքն անչափ հեռու է քննարկման իսկական պատմականությունից և օբյեկտիվությունից, քանի որ այն ժխտում է դետերմինիզմը, պատմական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, ընդհանրացումների, կանխատեսման հնարավորությունը և այլն։

Ժխտելով պատմական պրոցեսի օբյեկտիվ բնույթը, ժամանակակից ֆրանսիացի բուրժուական պատմաբան Ա. Մարուն նշում է, որ «գոյություն չունի պատմական ռեալություն, որը նախորդեր գիտությանը և որը վերջինս պետք է նոր միայն վերարտադրեր։ Պատմությունը պատմաբանի՝ իմացության սուբյեկտի ստեղծագործական ջանքի արդյունք է, սուբյեկտ, որը կապ է հաստատում իր ընկալած անցյալի և ներկայի միջև, որի մի մասն է ինքը» (H. Marrou. De la connaissence historique. Paris, 1955, p. 55)։ Քանի որ, ըստ Մարուի, սուբյեկտի առանձնահատկությունը լրիվ համընկնում է օբյեկտի առանձնահատկության հետ, ապա ստացվում է, որ «պատմությունը միայն այն է, ինչ պատմաբանը հասկացել է անցյալից»։ Իսկ դա նշանակում է, որ օբյեկտն այլ բան չէ, քան սուբյեկտի գործունեություն, առաջինի



բովանդակությունը որոշվում է երկրորդի բովանդակությամբ, և պատմությունը կլինի այն, ինչի հաջողվում է հասնել իրեն՝ պատմաբանին։ Ուստի Մարուն գրում է, որ պատմաբանի համար «փաստերն ստեղծարար գործունեության, կառուցման արդյունք են» (H.J. Marrou. L'epistméologie de l'histoire en France aujourd'hui. Paris, 1973, pp. 1-2)։

Ֆրանսիացի բուրժուական մի այլ պատմաբան՝ Կալոն, գտնում է, որ «պատմական ռեալությունը ստեղծվում է պատմաբանի կողմից այնպես, ինչպես ֆիզիկական ռեալությունն ստեղծվում է ֆիզիկոսի կողմից» (E Callott. Ambiguites et autinomies de l'histoire et de sa philosophie. Paris, 1962, p. 50)։ Դրանով իսկ, ինչպես տեսնում ենք, ժխտվում է պատմական իրականության, պատմական փաստերի օբյեկտիվ գոյությունը, հետևաբար և մերժվում է քննարկման օբյեկտիվության պահանջը։

Այսպիսով, արդի բուրժուական փիլիսոփայության և սոցիոլոգիայի հիմնական արատներից մեկն այն է, որ այն անտեսում է ընդհանուրի և եզակիի դիալեկտիկան, ժխտում է համընդհանուրի, պատմական զարգացման օրենքների բուն օբյեկտիվ գոյությունը։ Պատմականության ողջ իմաստը հանգեցվում է մասնավոր փաստերի հասարակ արձանագրման, առանձին, իրար հետ չկապված և գիտական իմացության համար անմատչելի պատմական «իրավիճակների» նկարագրման, որոնք բացառում են պատմական պրոցեսի ներքին, էական կապերի ըմբռնումը, պրոցես, որը բացի այդ մեկնաբանվում է որպես սպոնտան ու իռացիոնալ ինչ-որ բան։ Այսպես, Կ. Պոպերը գտնում է, որ ի հակադրություն տեսական գիտությունների, պատմական գիտությունների հետաքրքրությունը միտում է ոչ թե այսպես կոչված համապարփակ պատմական օրենքների, այլ՝ «մասնավոր իրադարձությունների» հետազոտությունը։ Ըստ Ի. Գեյզինգեի, պատմության օրենքների և պատմական իրադարձությունների պատճառական դետերմինացվածության սահմանումը «ապարդյուն պատրանք» է, քանի որ պատմաբանի առարկան են՝ առանձնահատուկը, տեսողականը, կոնկրետը, եզակին և մասնակին։

Պատմությունը դիտելով որպես մի գիտություն միայն եզակիի մասին, արդի բուրժուական փիլիսոփաները, պատմաբաններն ու սոցիոլոգները բացառում են գիտական ընդհանրացումների և պատմության որևէ օրենքի ձևակերպման սկզբունքային հնարավորությունը։ Իսկ եթե նրանք հասնում էլ են մինչև ընդհանրացում (օրինակ, Մ. Գինզբերգը, Է. Քառը և ուրիշներ), փորձեր անելով «սինթետիկորեն» մոտենալու պատմությանը, այն ընդհանուրը, որ նրանք այդ դեպքում ստանում են, հեռու չի գնում այն վերացական, մակերեսային ընդհանրությունից, այն աննշան միատեսակությունից, որը ոչ մի առնչություն չունի դիալեկտիկայի հետ ընդհանրապես և քննարկման օբյեկտիվության սկզբունքի հետ՝ մասնավորապես։ Իսկ պատմական զարգացման էությունը, անհրաժեշտ օրինաչափությունները դուրս են մնում այդպիսի «ընդհանրացման» սահմաններից, քանի որ, գտնվելով իդեալիզմի ու մետաֆիզիկայի դիրքերում, միանգամայն անհնար է հայտնաբերել այդ օրինաչափությունները։

Քննարկման օբյեկտիվության սկզբունքի ժխտումն արդի բուրժուական փիլիսոփաներին և սոցիոլոգներին հնարավորություն չի տալիս քիչ թե շատ բանական հետևություններ անել հասարակական զարգացման իրական տենդենցների մասին, չնայած նրանք շատ են գրում «մարդկության ապագայի», պատմության «կանխատեսման» մասին, շատ են ուշադրություն նվիրում «ֆուտուրոլոգիական հետազոտություններին» և այլն։ Նրանք չեն կարող (ասենք չեն էլ ցանկանում) ընդունել վաղուց պրակտիկայով, շատ երկրների փորձով ստուգված Մարքսի այն դրույթը, որ դեպի նոր հասարակարգ՝ դեպի սոցիալիզմ տանող ուղին օբյեկտիվ օրինաչափություն է և անցնում է «բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշխանության անխուսափելի նվաճման» միջով (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 499)։ Ընդհակառակը, դեռ մինչև այսօր էլ կան «տեսաբաններ», որոնք, հակառակ իրականության միանգամայն ակնհայտ փաստերին, պնդում են, թե կապիտալիստական սիս-

*տեմը իբր «ոչ մի նշան չի ցուցաբերում շարժվելու այն ուղղությամբ, որը տաներ դեպի կապիտալիզմի անխուսափելի կործանման մասին Մարքսի կանխատեսության իրականացում»* (A. G. Gruchy. Comparative Systems. N.-Y., 1966, p. 265):

*Սակայն իրականում պատմության ռեալ ընթացքն ընդհանուր ոչինչ չունի այդ հետևության հետ, քանի որ «...հերքված է ռեֆորմիստների և բուրժուական գաղափարախոսների հորինած այն գլխավոր առասպելներից մեկը, թե իբր մեր օրերի կապիտալիզմն ընդունակ է ազատվելու ճգնաժամերից... Կոմունիստները հեռու են պնդելուց, թե տեղի կունենա կապիտալիզմի «ինքնափլուզում»: Նա դեռ բավական շատ ռեզերվներ ունի: Սակայն վերջին տարիների իրադարձությունները նոր ուժով հաստատում են, որ կապիտալիզմը ապագայից զուրկ հասարակարգ է» (*ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 42,43):*

*Արդի բուրժուական փիլիսոփայության և սոցիոլոգիայի համար բնորոշ է ընդհանուր առմամբ ագնոստիկական մոտեցումը կանխատեսման պրոբլեմի նկատմամբ: Այսպես, օրինակ, կանադացի սոցիոլոգ Մեյոն համոզված է, որ «մենք չգիտենք և չենք կարող իմանալ ապագան»* (H. B. Mayo. Introduction to Marxist Theory. N.-Y., 1960. p. 185): *Հեղինակի այս կատեգորիկ հրաժարումը հասարակական զարգացման հեռանկարների, տենդենցների բացահայտման որևէ հնարավորությունից հիմնված է այն համոզման վրա, որ «չկան պատմության այնպիսի օրենքներ, որոնք հնարավորություն տան կանխատեսելու ապագան»:*

*Կ. Պոպերը գտնում է, որ սկզբունքորեն անհնար է կանխատեսել մարդկության ապագա զարգացումը: «Թեև,— գրում է նա,— սոցիալական սիստեմը դրսևորում է սեփական տրամաբանության որոշ գծեր, այնուամենայնիվ այն գործում է կուրորեն, անբանականորեն: Նրա մեխանիզմի մեջ ընկնող մարդիկ ևս ընդհանուր առմամբ կույր են կամ գրեթե կույր: Նրանք չեն կարող կանխատեսել իրենց գործունեության առավել կարևոր արդյունքներն անգամ»* (K. R Popper. Falsche Propheten-Hegel, Marx und die Folgen. Bern. 1958, S. 141)

*Բացառելով ապագայի գիտական կանխատեսման հնարավորությունը, Կ. Պոպերը այդ հիմնավորում է նրանով, որ պատմական զարգացման առավել կարևոր ասպեկտներն անկրկնելի են: Այդ պատճառով էլ, նրա կարծիքով, չի կարող գոյություն ունենալ պատմական զարգացման այնպիսի գիտական տեսություն, որի վրա կարողանար հիմնվել պատմական կանխատեսումը:*

*Վերջին տարիներին բուրժուական փիլիսոփաների ու սոցիոլոգների աշխատություններում առավել լայն տարածում են ստանում այն կոնցեպցիաները, որոնք ելնում են սոցիալական կանխատեսման հնարավորության ճանաչումից: Արդի բուրժուական ֆուտուրոլոգների մոտ կարելի է հանդիպել դատողության, որ «ապագայի պատմաբանները պետք է հանգեն պատահականության սկզբունքին», կարելի է հանդիպել պատմությունը և կանխատեսվող պրոցեսների զարգացման արդի մակարդակը հաշվի առնելու պահանջ, հետևություն այն մասին, որ անհրաժեշտ է «ժամանակին ճանաչել ապագա զարգացման հակասական տենդենցները», պնդումներ «հնարավոր ապագաների բազմազանության» և անգամ այն մասին, որ «ապագան կանխատեսելու ընդունակությունն ավելի ու ավելի կարևոր է դառնում» և այլն: Սակայն մոտիկից քննելիս պարզվում է, որ արտաքուստ ճշմարտանման այդ դրույթներն իրենց ներքին բովանդակության մեջ ստանում են իրենց էությամբ իդեալիստական և մետաֆիզիկական կեղծ մեկնաբանում:*

*Հասարակական զարգացման պրոբլեմների վերաբերյալ արդի բուրժուական փիլիսոփաների, պատմաբանների և սոցիոլոգների հայացքների համառոտ ակնարկն անգամ ցույց է տալիս, որ դրանք բավական հեռու են քննարկման օբյեկտիվության սկզբունքից և ընդհանրապես մատերիալիստական դիալեկտիկայից: Այդ կոնցեպցիաներում «նոր հիմքի վրա վերարտադրվում են» նախորդ իդեալիստական և մետաֆիզիկական ուսմունքների՝ իրենց հիմքում միևնույն արատները:*

# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐԱԶԱՏ ԳՈՐԾԸ

**Վ. Ֆ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԱՄԽ-ի քարտուղար

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ աշխատանքի պայմանների բարելավումը սոցիալիստական շինարարության հրատապ խնդիրներից է և մշտապես գտնվում է մեր կուսակցության ու կառավարության տեսադաշտում: Մշակելով սովետական ժողովրդի սոցիալական զարգացման ծրագիրը՝ ՍՄԿԿ XXV համագումարը միջոցառումների այդ համակարգում առանձնապես շեշտեց արտադրության մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման կարևորությունը:*

*Սովետական պետության ողջ պատմությունը համոզիչ կերպով վկայում է, որ կուսակցությունն ու սովետական կառավարությունը մշտապես հոգացել են աշխատավոր մարդու ստեղծագործական հնարավորությունների բացահայտման, արտադրության բարձր արդյունավետության համար մղվող պայքարում նրա անձնական նախաձեռնության և նորարարական մտքի զարգացման մասին: Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ արվեցին առաջին քայլերն աշխատանքի գիտական կազմակերպումը (ԱԳԿ) մշակելու և արմատավորելու ասպարեզում: Դրա նպատակն էր աշխատանքը դարձնել ոչ միայն բարձրարտադրողական, այլև հաճելի ու անվտանգ:*

*Առաջնորդի ցուցումով ու անմիջական մասնակցությամբ մշակվել և ընդունվել են նաև բանվորների ու ծառայողների աշխատանքային պայմանների բարելավման և աշխատանքի պաշտպանության առաջին օրենսդրական ակտերն ու որոշումները: Հետագայում ևս հետևողականորեն շարունակվել է այդ կուրսը: Իրագործվել են սոցիալ-տնտեսական այնպիսի խոշոր մասշտաբի միջոցառումներ, ինչպիսիք են բանվորների ու ծառայողների համար շաբաթվա ընթացքում երկօրյա հանգստի սահմանումը, մի շարք բնագավառներում արձակուրդի տևողության երկարացումը, կոլտնտեսականների պետական սոցիալական ապահովության հարցերի լուծումը և այլն: Տարեցտարի աճում են աշխատանքի պաշտպանության նպատակին հատկացվող միջոցները: Միայն 1975 թ. Միության մասշտաբով դրանք գերազանցեցին մեկ միլիարդ ռուբլուց:*

*Աշխատանքի պայմանների բարելավմանը մեծապես նպաստեց ՍՄԿԿ Կենտկոմի 1966 թ. նոյեմբերի 30-ի որոշումը՝ «Արդյունաբերության մեջ, շինարարությունում և տրանսպորտում աշխատանքի պաշտպանության և տեխնիկայի անվտանգության հարցերի վրա կուսակցական, տնտեսական ու արհմիութենական կազմակերպությունների ուշադրության ուժեղացման մասին»: Գործող օրենսդրությամբ աշխատանքի պաշտպանությունն ու դրա պայմանների բարելավումը մեր երկրում համարվում են պետական բոլոր մարմինների, ձեռնարկությունների ու հիմնարկությունների ղեկավարների անմիջական պարտականությունը: Այս ասպարեզում կարևորագույն դերը, անշուշտ, պատկանում է արհմիություններին՝ բանվոր դասակարգի ամենամասսայական կազմակերպությանը: Աշխատանքի պաշտպանության, տեխնիկայի անվտանգության, արտադրական սանիտարիայի հետ առնչվող հարցերի լուծմանն ակտի-*

վորեն մասնակցում է արհմիութենական լայն ակտիվը։ Կուսակցությունը հենց արհմիություններին է հանձնարարել վերահսկողություն սահմանել այդ ամենի վրա։ Կենսագործելով վերադաս մարմինների որոշումները՝ տնտեսական և արհմիութենական կազմակերպությունները որոշակի գործ են անում բանվորների ու ծառայողների աշխատանքի պայմանների ու պաշտպանության բարելավման համար։

Գիտատեխնիկական հեղափոխությունը լիովին վերափոխեց մեր արդյունաբերության դեմքը, արտադրության մարդուն օգնության եկավ կատարելագործված տեխնիկան, ժամանակակից մեքենաները և սարքավորումները նրան ազատեցին արտադրական ծանր պրոցեսներից, որոնք պահանջում էին ֆիզիկական մեծ ուժի գործադրում։

Արտադրության մարդն իր ժամանակի զգալի մասն անցկացնում է գործատեղում։ Նրա աշխատունակության, տրամադրության և, վերջին հաշվով, առողջության վրա որոշակիորեն ազդում են արտադրական պայմանները, որոնք անմիջական ներգործություն են ունենում աշխատանքի բովանդակության, դրա նկատմամբ մարդու վերաբերմունքի, ֆիզիկական ու մտավոր ընդունակությունների զարգացման վրա։ Վերջին խնդրի առնչությամբ հույժ կարևոր են առանձնապես արտադրության միջոցների դերը, աշխատանքի հոգեբանական հնարավորություններին դրանց համապատասխանության աստիճանը։ Աշխատանքային պայմանները ներառում են մի շարք գործոններ՝ բանվորական տեղի հարմարությունը, լուսավորությունը, օդափոխությունը, աղմուկի աստիճանը, ջերմությունը, արտադրամասերի մաքրությունը և կարգ ու կանոնը, մարդկային փոխհարաբերությունները և այլն։

Վ. Ի. Լենինը աշխատանքի պաշտպանության և դրա պայմանների բարելավման լավագույն երաշխիքը, ամենից առաջ, տեսնում էր տեխնիկական առաջընթացի մեջ։ Նա գտնում էր, որ միայն զարգացած արտադրությունն է ի վիճակի թեթևացնելու բանվորների և գյուղացիների գործը, վերափոխելու կեղտոտ, անհրապույր արհեստանոցները, դրանք վերածելու մաքուր, լուսավոր լաբորատորիաների։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, անշեղորեն ղեկավարվելով լենինյան այդ ցուցումով, կուսակցական, տնտեսական և արհմիութենական կազմակերպությունների ուշադրությունը մշտապես սևեռել է այդ կարևոր խնդրի լուծման վրա։ Կարելի է բազմաթիվ օրինակներ թվարկել ապացուցելու համար, թե ինչպիսի դրական մեծ ազդեցություն են գործում արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, տեխնիկական առաջընթացը աշխատանքի բնույթի արմատական վերափոխման, այս կամ այն պրոցեսում զբաղված բանվորների թվի կրճատման վրա։ Այս առումով հիշատակման արժանի են Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրական միավորման ձեռնարկումները։ Ոչ հեռու ժամանակներում աշխատանքային պայմաններն այստեղ բավական ծանր էին։ Վերջին տարիներին արտադրության մեջ ներդրվեցին հայրենական և արտասահմանյան բարձրարտադրողական նոր մեքենա-սարքավորումներ, ստեղծվեցին աշխատանքային անվտանգ պայմաններ, որոնք տվեցին գոհացուցիչ արդյունք։ Զգալիորեն նվազեցին դժբախտ դեպքերը, իսկ 1976 թվականին արտադրության մեջ ընդհանրապես ոչ մի դժբախտ դեպք չի արձանագրվել։

«Հայէլեկտրալույս» արտադրական միավորումում նոր տեխնիկայի ներդրման կոմպլեքսային պլանների հաջող իրականացման շնորհիվ հիմնական արտադրության մեքենայացման ու ավտոմատացման աստիճանը 30-ից աճել ու հասել է մինչև 40 տոկոսի, իսկ էլեկտրալամպերի արտադրության մեջ՝ 70—72 տոկոսի։

Սակայն մինչև օրս էլ կան նաև այնպիսի ձեռնարկություններ, որտեղ անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ծանր աշխատանքների մեքենայացմանն ու ավտոմատացմանը։ Արդյունաբերության մեջ դեռևս մեծ է ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների թիվը։ Երբեմն առանձին մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ խախտում են գոյություն ունեցող կարգը, նոր օբյեկտները շահագործման են հանձնում տեխնիկայի անվտան-



գության և արտադրասանիտարիայի կանոնների խախտումներով, առանց պետական սանիտարական ու տեխնիկական տեսչությունների համաձայնության։ Նման վիճակում են հանձնվել, օրինակ, ավտոտրանսպորտի մինիստրության Լենինականի տաքսամոտորային ու ավտոմոբիլային ճանապարհների շինարարության ու շահագործման մինիստրության ավտոձեռնարկությունները։ Նույնանման խախտումներ են կատարվել թեթև արդյունաբերության մինիստրության Լենինականի Ջկալովի անվան կարի, կոշիկի, Կիրովականի Ս. Շահումյանի անվան կարի ֆաբրիկաներում և այլ ձեռնարկություններում։

Շինանյութերի արդյունաբերության մինիստրության հանքվարչություններում քարի տաշման ու սղոցման մի շարք տեղամասեր շահագործման են հանձնվել աշխատանքի պաշտպանության կանոնների լուրջ խախտումներով։ Առողջապահության նոր օբյեկտները շահագործման են հանձնվում թերավարտ վիճակում, սանիտարական նորմաների ու կանոնների կոպիտ խախտումներով։ Առանձին դեպքերում պետական հանձնաժողովները շենքերի ընդունմանը մասնակից չեն դարձնում արհմիութենական տեխնիկական տեսչության և սանէպիդծառայության ներկայացուցիչներին։

Աններելի է, որ առանձին մինիստրություններ ու գերատեսչություններ, ինչպես, օրինակ, գունավոր մետալուրգիայի վարչությունը, շինանյութերի, թեթև արդյունաբերության մինիստրությունները, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի ավտոտեխսպասարկման վարչությունը, աշխատանքի պաշտպանության վերաբերյալ բազմաթիվ որոշումներ են ընդունում, մի քանի անգամ նշում գոյություն ունեցող նույն թերությունները ու դրանով էլ բավարարվում։ Նրանք վճռական միջոցների չեն դիմում թերություններն ու խախտումները վերացնելու համար և փաստորեն զբաղվում են թղթաբանությամբ, իսկ արհմիութենական կազմակերպությունները, ցավոք, հաշտվում են նման վիճակի հետ։

Արհմիություններին տրված լայն իրավունքները պարտավորեցնում են նրանց՝ ուսումնասիրել աշխատանքի պաշտպանության վիճակը յուրաքանչյուր գործարանում, ֆաբրիկայում, կազմակերպությունում, տնտեսությունում, ձգտել այն բանին, որպեսզի մինիստրությունները և գերատեսչությունները կոնկրետ օգնություն ցույց տան իրենց ենթակա ձեռնարկություններին՝ նոր ու անվտանգ տեխնոլոգիայի մշակման ու ներդրման ասպարեզում։ Գործող ձեռնարկությունների վերակառուցման ժամանակ պետք է հաշվի առնվեն աշխատանքի պաշտպանության ու անվտանգության տեխնիկայի սահմանված նորմաները։ Ձեռնարկություններում, 1976—80 թթ. աշխատանքի պաշտպանության կոմպլեքսային հեռանկարային պլանները մշակելիս, պետք է հաշվի առնել աշխատանքի պաշտպանության հարցերին նվիրված 1975 թ. համամիութենական խորհրդակցության հանձնարարականները։

Ինչպես նշվեց այդ խորհրդակցությունում, մեր երկրում աշխատանքի պայմանների բարելավման բնագավառում ձեռք բերված հաջողություններն անվիճելի են։ Սակայն, երբ կատարվածը գնահատում ենք ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած պահանջների տեսակետից, ապա պարզ է դառնում, որ այդ բնագավառում դեռևս ամեն ինչ չի արված և պետք է իրականացնել նոր խոշոր միջոցառումներ։

Ամեն մի գործի հաջողություն պայմանավորված է դրա հստակ կազմակերպմամբ, դրա նկատմամբ արդյունավետ վերահսկողությամբ։ Արհմիութենական տեղական կոմիտեները, գիտատեխնիկական ընկերությունների և գյուտարարական-ռացիոնալիզատորական խորհուրդների հետ համատեղ, պետք է անցկացնեն գործող սարքավորումների ստուգատեսներ, բացահայտեն և վերացնեն տեղ գտած թերությունները, ուժեղացնեն հսկողությունը պրոֆիլակտիկ նորոգումների նկատմամբ, հասնեն արտադրական վթարների և դժբախտ դեպքերի կանխման։

Սովետական պետությունը միջոցներ չի խնայում բանվորների ու ծառայողների աշխատանքային պայմանների բարելավման համար։ Տարեցտարի

ավելանում են աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի համար հատկացվող գումարները: Իններորդ հնգամյակում այդ նպատակով մեր հանրապետությունում ծախսվեց ավելի քան 72 միլիոն ռուբլի՝ ութերորդ հնգամյակի 49 միլիոնի դիմաց: Իրականացվել են խոշոր միջոցառումներ: Քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում միայն 1975 թ. փոխվել են 256 սարքավորումներ: Նախորդ հնգամյակի տարիներին սննդի արդյունաբերության 84 ձեռնարկություններում խեղումների ոչ մի դեպք չի նկատվել, ներդրվել են ավելի քան 70 ավտոմատացված գծեր, զգալի գործ է արվել բեռնման և բեռնաթափման աշխատանքների մեքենայացման ասպարեզում: Շահագործման համար վտանգավոր հին կաթսաները փոխարինվել են ավտոմատացված նոր կաթսաներով: Թեթև արդյունաբերության մինիստրության համակարգում շահագործման են հանձնվել 7 նոր և վերակառուցվել 18 գործող ձեռնարկություններ: Անտառային և փայտամշակման արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում փոխվել են մեծ քանակությամբ հնացած հաստոցներ ու սարքավորումներ, տեղադրվել օդափոխման նոր սարքավորումներ:

Իրականացված միջոցառումների շնորհիվ ավելանում է այն ձեռնարկությունների թիվը, որտեղ արտադրական խեղումներ չեն լինում: Ուշագրավ է, որ հանրապետության արտադրական ձեռնարկությունների 91 տոկոսում 1975 թ. չեն եղել մահացու և ծանր դժբախտ դեպքեր: Նման դեպքերի հաճախականության գործակիցը 1975 թ., 1971 թ. համեմատությամբ, նվազել է 44 տոկոսով:

Աշխատանքի պայմանների և անվտանգության տեխնիկայի բարելավման գործում վճռական նշանակություն կունենա տասներորդ հնգամյակում առաջադրված խնդիրների անթերի կատարումը: Հնգամյակի տարիներին կկառուցվեն և շահագործման կհանձնվեն ժամանակակից տեխնիկայով զինված առաջնակարգ ձեռնարկություններ, կվերակառուցվի գործողների զգալի մասը, բազմազան միջոցառումներ կիրականացվեն գյուղատնտեսության մեջ, շինարարությունում ու տրանսպորտում աշխատատար գործողություններն է՛լ ավելի կատարելագործելու, մեքենայացնելու և ավտոմատացնելու ասպարեզում: Այդ նպատակով հատկապես խոշոր աշխատանք կծավալվի արտադրական միավորումներում: Նախատեսված է հիմնովին վերակառուցել Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատի կարբիդ-կալցիի արտադրամասը, որը խիստ վնասակար ազդեցություն է գործում շրջապատի վրա: Կնվազի մթնոլորտ արտանետվող գազերի քանակը, կմաքրվեն կեղտաջրերը: Օդի աղտոտումը կանխարգելող միջոցառումներ կիրականացվեն նաև Երևանի «Պոլիվինիլացետատ», ավտոմոբիլային գործարաններում:

Աշխատանքի պայմանների բարելավման և դրա պաշտպանության ասպարեզում վերջին տարիներին ձեռք բերված փորձը ցույց է տալիս, որ մեծ արդյունքի կարելի է հասնել այն դեպքում, երբ այդ գործում լայնորեն ներգրավվում են աշխատավորական մասսաները, երբ լավ է օգտագործվում նրանց նախաձեռնությունը: Դրա բնորոշ օրինակներից մեկը արտադրության բարձր կուլտուրայի համար ծավալված շարժումն է, որը լայն արձագանք գտավ ինչպես մեր անծայրածիր երկրում, այնպես էլ Սովետական Հայաստանում: Մեր հանրապետությունում արտադրության բարձր կուլտուրայի ձեռնարկության կոչման արժանանալու համար այժմ պայքարում են 122 կոլեկտիվներ: Բնորոշն այստեղ այն է, որ իրագործվող միջոցառումների մեծ մասը կատարվում է ձեռնարկությունների ռեզերվների և ներքին հնարավորությունների հաշվին, աշխատավորների ակտիվ մասնակցությամբ:

Մեր ժամանակներում առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում կանանց աշխատանքի պայմանների բարելավման հարցը: Արհմիությունների կենտրոնական խորհուրդը 1975 թ. ապրիլի 11-ին որոշում ընդունեց ժողովրդական տնտեսության մեջ, ձեռնարկություններում ու հիմնարկություններում ընդգրկված կանանց աշխատանքի պայմանների, կենցաղի ու հանգստի հասարակական ստուգատես անցկացնելու մասին: Այդ որոշման կենսագործման



նպատակով ՀԱՄԽ-ը հանրապետության Մինիստրների սովետի հետ մշակեց միջոցառումների պլան, հաստատեց ստուգատեսի անցկացման ու արդյունքների ամփոփման պայմանները: Հրավիրվեց հանրապետական սեմինար-պարապմունք, որտեղ ուսումնասիրվեց այդ բնագավառում կուտակված առաջավոր փորձը: Լենինականում գումարվեց կոնֆերանս՝ «Գիտատեխնիկական պրոցեսը և կանանց աշխատանքը սոցիալիստական հասարակության պայմաններում» թեմայով: Կուլտուրայի օջախներում ցուցահանդեսներ կազմակերպվեցին՝ «Սովետական կինը կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակից է», «Սովետական կինը մայր է և աշխատավորուհի» և այլ թեմաներով: Միայն ստուգատեսի ընթացքում 4.311 կին առողջության համար վնասակար արտադրամասերից փոխադրվել են ավելի թեթև գործի, մսուր-մանկապարտեզներում երեխաների թիվն ավելացել է 1.190-ով: Երևանի Լենինի անվան մետաքսի կոմբինատի, մոդելային կոշիկների ֆաբրիկայի, № 7 հացի գործարանի, Լենինականի Լուկաշինի անվան մանվածքային և Կիրովականի կահույքի ֆաբրիկաների կոլեկտիվներն արժանացել են համամիութենական մրցանակների ու դիպլոմների:

Ճշմարտությունը, սակայն, պահանջում է ասել, որ կանանց աշխատանքի պայմաններն ամենուր չէ, որ բարվոք են: Դեռևս մեծ է գիշերային հերթափոխություններում և անվտանգության առումով անապահով պայմաններում գտնվող կանանց թիվը, բարձր է ձեռքի աշխատանքում ընդգրկվածների տոկոսը: ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումում արտասանած ճառում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդրի «...լուծման գլխավոր ուղին աշխատանքի արտադրողականության աճի արագացումն է, որը պետք է ձեռք բերվի նախ և առաջ ձեռքի աշխատանքի մեքենայացման հաշվին՝ ոչ միայն հիմնական արտադրություններում, այլև բեռնման-բեռնաթափման և նորոգման օժանդակ աշխատանքներում»:

Այդ տեսակետից զգալի են թերությունները հատկապես հանրապետության գյուղատնտեսության մեջ: Անասնապահական ֆերմաներում հիմնական արտադրական գործողությունները մեքենայացված են՝ կթինը՝ 22,6 տոկոսով, կերի բաշխմանը՝ 12,6, գոմաղբի հեռացմանը՝ 56,2 տոկոսով: Ցածր է կենցաղային սպասարկման մակարդակը: Շատ բնակավայրերում չկան կենցաղսպասարկման օբյեկտներ, որոշ կոլտնտեսություններում ու սովխոզներում չեն գործում մսուր-մանկապարտեզներ:

Հիմնականում պրոֆեսիոնալ հիվանդությունների ու խեղումների մակարդակով պետք է դատել աշխատանքային պայմանների մասին: Եվ երբ այս պահանջներից ելնելով ենք գնահատում իրավիճակը, ապա աչքի են զարնում մի շարք թերություններ և բացթողումներ: Ցավով պետք է նշել, որ դեռևս չեն կանխվել արտադրական խեղումների հետևանքով տեղի ունեցած պատահարները, այդ թվում և մահացու դեպքերը: Դրությունն առավել անհանգստացնող է գունավոր մետալուրգիայի վարչության, արդյունաբերական շինարարության, գյուղատնտեսության մինիստրության ձեռնարկություններում ու տնտեսություններում:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դժբախտ պատահարները հիմնականում տեղի են ունենում արտադրության տեխնոլոգիայի և անվտանգության տեխնիկայի կանոնների խախտման, բանվորական տեղի և աշխատանքի վատ նախապատրաստման ու կազմակերպման պատճառով, ինչպես նաև մեխանիզմների, սարքավորումների և հաստոցների անսարքության հետևանքով: Փոքր դեր չեն խաղում աշխատանքային ու արտադրական կարգապահության խախտումները և բանվորների անբավարար ուսուցումը: Աններելի է, որ մեր մի շարք օբյեկտներում չկան աշխատանքի պաշտպանության ծառայություններ, սանիտարա-կենցաղային պայմանները չեն համապատասխանում գործող նորմաներին: Առանձին ձեռնարկություններում չեն բավականացնում հանդերձարանները, բաղնիքներն ու լվացարանները, չկան կանանց անձնական հիգիենայի սենյակներ:

համագումարը։ Աշխատանքի պայմանների բարելավման խնդիրները հանգա-
մանորեն քննարկվել են արհմիութենական սկզբնական կազմակերպություն-
ների վերջին հաշվետու-ընտրական ժողովներում, դրանց մեծ ուշադրություն են
նվիրել նաև արհմիութենական կոնֆերանսներն ու համագումարները։

Սովետական ողջ ժողովրդի հետ միասին մեր արհմիությունները, արհ-
միության յուրաքանչյուր անդամ խորին գոհունակությամբ ընդունեցին ՍՍՀՄ
արհմիությունների XVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտու-
ղար Լ. Ի. Բրեժնևի արտասանած խորապես բովանդակալից ճառը, համագու-
մարին ՍՄԿԿ Կենտկոմի հղած ողջույնը։ Կարելի է առանց չափազանցության
ասել, որ համագումարի ուշադրության կենտրոնում սովետական մարդն էր։
Դա առանձնահատուկ ցայտունությամբ դրսևորվեց Լ. Ի. Բրեժնևի ճառում, որը
և կանխորոշեց համագումարի աշխատանքի ողջ բովանդակությունը։ «Կուսակ-
ցությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— առաջին պլանի վրա է դրել սովետական
մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման
խնդիրը։ Նա հազարավոր ու հազարավոր պրակտիկ գործերի ոլորտն է փո-
խադրել մեր ծրագրային լոզունգը՝ «Ամեն ինչ մարդու համար, ամեն ինչ հա-
նուն մարդու»։ Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը, արդյունաբերության, գյուղատըն-
տեսության, շինարարության ու տրանսպորտի տեխնիկական վերազինումը,
որի համար հսկայական գումարներ են հատկացվում, կուսակցությունը դիտում
է որպես աշխատապայմանները բարելավելու, բոլոր արտադրությունները
մարդու համար անվտանգ, հարմար դարձնելու վճռական միջոց։ Արհմիու-
թյունների համար իբրև մարտական պատվիրան են հնչում ՍՄԿԿ Կենտկոմի
գլխավոր քարտուղարի այն խոսքերը, թե կյանքը ամեն քայլափոխի մարդու
հանդեպ հոգատարության նոր հարցեր է առաջադրում և որ դրանք «...կարելի
է լուծել միայն մարդու նկատմամբ հոգատար վերաբերմունքի մեծ արվեստն
անդուլ կերպով կատարելագործելով։ Եվ ուրիշ ով, եթե ոչ արհմիությունները,
որոնք գտնվում են կյանքի հորձանուտում, պետք է ակտիվորեն մասնակցեն
այդ մեծ գործին, որից կախված է յուրաքանչյուր սովետական մարդու բախ-
տը, երջանկությունը»։

Համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառը, նրանում պարունակ-
ված դրույթներն ու հետևությունները տևական ժամանակաշրջանի մարտական
ծրագիր են սովետական արհմիությունների համար։

Աշխատանքի պաշտպանության ու անվտանգության տեխնիկայի հետագա
բարելավումը համարելով արհմիությունների կարևորագույն խնդիրը, Լ. Ի.
Բրեժնևն ասաց. «Մեր նպատակը կարելի է ձևակերպել այսպես. անվտանգու-
թյան տեխնիկայից դեպի անվտանգ տեխնիկա։ Մենք կանգնած ենք այդ ուղու
վրա և կշարունակենք դրանով ընթանալ անշեղորեն»։ Սովետական մարդկանց
աշխատանքի պայմանների նկատմամբ իսկական լենինյան հոգատարությամբ
տոգորված այդ ճառում առաջադրված խնդիրները մեզ պարտավորեցնում են
նոր ձևով դնել աշխատանքի ու կենցաղի հետ առնչվող շատ հարցեր, ավելի
հաստատակամորեն ու հետևողականորեն պայքարել աշխատանքի պայման-
ների բարելավման ասպարեզում արհմիությունների առջև ծառացած խնդիր-
ների լուծման համար։

ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարն ստեղծագործական նոր լիցք
հաղորդեց Հայաստանի արհմիութենական կազմակերպություններին։ Նրա
որոշումները, անտարակույս, կնպաստեն արհմիության անդամների քաղաքա-
կան ու աշխատանքային ակտիվության, արհմիութենական կազմակերպու-
թյունների մարտունակության բարձրացմանը, նրանց գործունեության բարե-
լավմանը։ Համագումարի որոշումների կենսագործումը կծառայի նաև արտա-
դրության կուլտուրայի հետագա բարձրացման, արտադրական խեղումների
նվազեցման, աշխատանքի պաշտպանության կանոնների ու նորմաների խըս-
տիվ պահպանման, աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների
բարելավման նպատակին։

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԲՈՒՐԺՈՒԱ-ԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՅԻ ՆԿՐՏՈՒՄՆԵՐԸ

Վ. Ա. ՄԻՐԶՈՅԱՆ

ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԳԻՏՈՒԹՅԱՆ կարևոր խըն-
դիրներից են, ինչպես մատնանշեց ՍՄԿԿ XXV համագու-
մարը, սոցիալական երևույթների ոչ մարքսիստական մեկնաբանումների քըն-
նադատական վերլուծությունը, բուրժուական սոցիոլոգիական մտքի էվոլյու-
ցիայի գիտական քննադատությունը։ Ներկայումս գաղափարախոսական պայ-
քարի առավել թեժ ասպարեզներից է մարդու աշխատանքային գործունեության
երկրներում աճել է ուշադրությունն արտադրության «մարդկային գործոնի»
նկատմամբ. այն դարձել է թե՛ տեսական քննարկումների առարկա և թե կապի-
տալ ներդրումների շահավետ ասպարեզ։
բնագավառը։ Վերջին տասը-տասնհինգ տարում զարգացած կապիտալիստական

Աշխատանքային պրոբլեմատիկայի նկատմամբ հետաքրքրության նման
աճը պայմանավորված է հիմնականում հասարակության արտադրական զար-
գացածության առկա աստիճանով։ Արդի գիտատեխնիկական հեղափոխության
ծավալումը որակապես նոր պահանջներ է ներկայացնում աշխատողին, փոխ-
վում են նրա տեղն ու դերը արտադրության համակարգում, արմատական փո-
փոխություններ է կրում աշխատանքի բուն բովանդակությունը, դրա անմիջական
սուբյեկտի զարգացումը հետզհետե դառնում է հետագա գիտատեխնիկական
և տնտեսական առաջադիմության վճռական գործոններից մեկը։ Արդյունաբե-
րական ձեռնարկության և նրա առանձին ենթահամակարգերի գիտական կա-
ռավարման իրականացումը աստիճանաբար հրամայական պահանջ է դառնում
աշխատողի շահագրգռված և գիտակից մասնակցությունը։ Այսինքն, հասարա-
կական արտադրության զարգացումն օրինաչափորեն հանգեցնում է աշխա-
տանքային գործունեության սուբյեկտի դերի բարձրացմանը՝ բուն արտադրու-
թյան անխափան գործառնության և հետագա զարգացման համար։ Դա ար-
տացոլվում է բուրժուական սոցիոլոգիայի ներկայիս հիմնական ուղղություն-
ներից մեկի՝ աշխատանքի սոցիոլոգիայի զարգացման մեջ։ Վերջինիս հետ ծա-
նոթացումը թույլ է տալիս, նրանում եղած արժեքավորի ու օգտակարի առանձ-
նացման հետ մեկտեղ, պարզորոշ տեսնել ընդհանրապես արդի բուրժուական
սոցիոլոգիայի գաղափարական և սոցիալ-քաղաքական էությունը, կիրառական
ուսումնասիրությունների նպատակները և ուղվածությունը։

ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱԿԱՆ ՄՏՔԻ ԷՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ և ներկա զար-
գացման տենդենցների քննարկումն անհրաժեշտ է սկսել Ֆրեդերիկ Թեյլորից,
որն Արևմուտքում համարվում է «գիտական մենեջմենտի» հիմնադիր, և «որից
միայն,— ինչպես հայտարարում է այդ բնագավառի ճանաչված հեղինակու-
թյուններից մեկը՝ ամերիկացի սոցիոլոգ Պ. Դրակերը,— սկսվեցին աշխատան-

քի ուսումնասիրման և կատարելագործման պարբերական փորձերը»: Մինչ Թեյլորը, աշխատանքի կազմակերպման սեղմ բնութագիրն այսպիսին է. բանվորների հմտությունը, փորձը, գիտելիքները միմյանց էին փոխանցվում տաբերայնորեն. որևէ կոնկրետ մասնագիտությունում աշխատանքի կատարման մեթոդները չէին ենթարկվում հատուկ վերլուծության և ուսումնասիրության. ձեռնարկատերերն ու կառավարիչները չէին տիրապետում պրոֆեսիոնալ բանվորների գործնական գիտելիքներին ու հմտություններին, ուստի, ձեռնարկության ղեկավարության խնդիրն էր՝ ամեն կերպ ստիպել բանվորին ներդնելու իր ողջ էներգիան ու գիտելիքները աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատակով: Սակայն, վերջին հաշվով, հենց բանվորներից կախված աշխատանքի տեմպը և արտադրողականությունը համեմատաբար ցածր էին: Բանվորների նման վարքում արտահայտվում էր, այսպես ասած, արհեստագործական աշխատանքի իներցիան, որի ժամանակ արհեստավորն ինքն էր որոշում աշխատանքի կատարման մեթոդները և ռիթմը: Սակայն, եթե նա միաժամանակ արտադրանքի տնօրենն էր, ապա կապիտալիստական ձեռնարկությունում բանվորներն արդեն աշխատում են կապիտալիստի համար և նրա իշխանության ներքո: Եվ զարմանալի չէ, որ, քանի դեռ այդ իշխանությունը չէր հասել ընդհուպ մինչև անմիջական արտադրական պրոցեսը, աշխատանքային վարքագծի իրենց «ազատությունը» բանվորներն օգտագործում էին աշխատանքի տեմպն իջեցնելու համար: Այլ կերպ ասած, բանվորների ակտիվությունն ու նախաձեռնությունը նման իրավիճակում խոչընդոտում էին աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: Հենց այս պրոբլեմի լուծման, այսինքն՝ հասարակական աշխատանքի արտադրողականության հետագա վերելքի հնարավորությունների ստեղծման մեջ է աշխատանքի կազմակերպման Թեյլորյան սիստեմի ծառայությունը:

«Կառավարման նոր փիլիսոփայության» հիմունքները Թեյլորն ամփոփել է հետևյալ խոսքերով. «ավանդական հմտությունների փոխարեն՝ գիտություն, հակասությունների փոխարեն՝ հարմոնիա, անհատական աշխատանքի փոխարեն՝ համագործակցություն, արտադրողականության սահմանափակման փոխարեն՝ առավելագույն արտադրողականություն, յուրաքանչյուր առանձին բանվորի զարգացումը մինչև նրան մատչելի առավելագույն արտադրողականություն և առավելագույն բարեկեցություն»[1]: Ակնհայտ է, որ Ֆր. Թեյլորը, որն իրեն միայն ինժեներ էր համարում և հրաժարվում էր սոցիոլոգ կոչվելուց, աշխատանքի կազմակերպման իր սիստեմը ներկայացնում էր իբրև արմատական հասարակական ռեֆորմ. բանվորների դժգոհության բացակայությունը, ամեն տեսակի գործադուլների իսպառ վերացումը նա ներկայացնում էր որպես այդ սիստեմի մեծագույն սոցիալական բարեգործություն: Ինչպես տեսնում ենք, աշխատանքի գիտական կազմակերպման հիմնադիրն այնպես նեղ չէր դատում, ինչպես որ ձգտում էին ներկայացնել նրա հետագա քննադատները և, հատկապես, «արդյունաբերությունում մարդկային հարաբերությունների» տեսության ներկայացուցիչները: Կարևոր է նշել այն, որ Թեյլորի ձևակերպած «հավատո հանգանակը», բանվորների և ձեռնարկատերերի, աշխատանքի և կապիտալի միջև համերաշխության և ներդաշնակության ձգտումը միանգամայն բնութագրում է և արդի բուրժուական սոցիոլոգին:

ԹԵՅԼՈՐԻԶՄՆ ԱՌԱՎԵԼ ԲՆՈՐՈՇՈՂՆ ԱՅՆ Է, որ արտադրության կազմակերպման ողջ համակարգում անտեսվում էին աշխատանքի անմիջական սուբյեկտի ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, կազմակերպչական այս կամ այն միջոցառման նկատմամբ նրա դրսևորած վերաբերմունքը: Ավելին, կառավարման Թեյլորյան սիստեմի սկզբունքները ուղղակիորեն բացառում էին անմիջական կատարողի մասնակցությունը պլանային և այլ կարգի մտավոր գործունեությանը: Թեյլորը գիտակցաբար ձգտում էր նվազագույնի հասցնել միջանհատական աշխատանքային հաղորդակցումը, պայքարում էր «սիստեմատիկ սաբոտաժի», այսինքն՝ բանվորների շփումից ծագող «երկրորդային դատողությունների» դեմ, համարելով դրանք աշխատանքի բարձր ար-



տադրողականության համար անբարենպաստ երևույթներ: Ձեռնարկության հիմնովին ռացիոնալացման և, հատկապես, ժամանակի ու բանվորի շարժումների մանրակրկիտ չափումների, ինչպես նաև աշխատավարձի բաշխման ձևերի կատարելագործման ուղիով Թեյլորը ձգտում էր հասնել յուրաքանչյուր աշխատանքային օպերացիայի կատարման միակ և լավագույն ձևին („One best way“); Նախօրոք ենթադրվում էր, որ վերջինս լիովին հասանելի է տեխնիկա-կազմակերպչական միջոցառումներով, շրջանցելով աշխատանքի սուբյեկտին, նրա շարժառիթների համակարգը: Ասենք, այդ շարժառիթներն էլ, անգլիական դասական տնտեսագետների ոգով (որոնցից Թեյլորը փոխառել էր «տնտեսական մարդու» և աշխատանքի՝ իբրև մարդու հարկադրական գործունեության, միմիայն ապրուստի միջոցի մասին պատկերացումները) հանգեցվում էին միմիայն տնտեսական խթաններին:

Աշխատանքի և արտադրության համակարգում մարդու դերի նկատմամբ Թեյլորյան մոտեցումը ներկայիս բուրժուական գրականության մեջ իրավամբ բնութագրվում է իբրև «տեխնիցիստական» մոտեցում: Թեյլորի շատ հետևորդներ ու քննադատներ են փորձել ըմբռնել այդ, ինչպես գրում է ֆրանսիացի սոցիոլոգ Պոլ Ալբուն, «անմարդկային տեխնիցիզմի» արմատները: Իր Ձեռնարկության մարդկային պրոբլեմները գրքում Ալբուն դրանք տեսնում է տեխնիկական բուռն զարգացման մեջ և հատկապես այն բանում, որ «ինդուստրիալ հեղափոխությունը, սկսած XIX դարի երկրորդ կեսից, սահմանեց մեքենաների գերազանցությունը»: Սակայն մեկնաբանվո՞ւմ է արդյոք բուրժուական կազմակերպչական մտքի տեխնիցիզմը, այսինքն՝ տեխնոլոգիական և կազմակերպական մոմենտների դերի գերագասումը «մարդկային գործոնի» նկատմամբ, միմիայն զուտ տեխնոլոգիական պատճառներով կամ իմացաբանական «մոլորություններով»:

Ինչպես արդեն ասվեց, արհեստավորը, արդյունաբերական բանվորի այդ «նախնին», սկզբից մինչև վերջ ինքն էր իրագործում աշխատանքային բոլոր ֆունկցիաները, և ամբողջովին նրա հմտությամբ, ընդունակություններով էր պայմանավորված արտադրանքի որակը: Նույնիսկ մանուֆակտուրային արտադրությունում, աշխատողի զարգացման վրա աշխատանքի ծայրահեղ բաժանման թողած ամբողջ վնասակար ազդեցությամբ հանդերձ, այնուամենայնիվ բանվորների կատարած աշխատանքները բաշխվում էին, Մարքսի խոսքերով ասած, «ընդունակությունների և ուժերի հիերարխիկ սանդղակին համապատասխան»[2]: Մինչդեռ XVIII դարի վերջի—XIX դարի սկզբի արդյունաբերական հեղափոխության ընթացքում, մեքենաների մուտքն արդյունաբերություն՝ օտարելով աշխատանքի սուբյեկտից անմիջապես աշխատանքի առարկայի մշակմանն ուղղված նրա ֆունկցիան, բանվորի դերը փաստորեն հանգեցրեց մեքենային լրացնող մի հասարակ կցորդի: Մեքենայական արտադրությունը, տեխնոլոգիական պրոցեսը խարսխելով օբյեկտիվ հիմքի վրա, ստեղծեց մի նոր մասնագիտություն, «որի բնորոշ գիծը,— նկատել է Մարքսը,— բանվորի պասսիվ ենթարկումն է մեխանիզմի շարժմանը, բանվորի լիակատար հարմարեցումը այդ մեխանիզմի կարիքներին ու պահանջներին... Այդ պասսիվության մասնագիտացումը, այսինքն՝ մասնագիտացման ոչնչացումը որպես այդպիսին, մեքենայական աշխատանքի բնորոշ գիծն է»[3]:

Կարծես թե ստացվում է այնպես, որ հենց միայն մեքենան է իրոք պայմանավորում Թեյլորի տեխնիցիստական մոտեցումը: Իհարկե, աշխատանքի գիտական կազմակերպման Թեյլորյան սիստեմում պետք է, որ արտահայտվեր այն անժխտելի փաստը, որ հասարակական արտադրության տեխնիկա-տեխնոլոգիական հիմքի զարգացման տվյալ փուլում արտադրության կառավարումն ու կատարելագործումը իրոք չէին պահանջում աշխատանքի անմիջական սուբյեկտի մասնակցությունը: Ճիշտ նույն կերպ, Թեյլորի հիմնադրույթը, թե բանվորներն ի սկզբանե չեն ուզում աշխատել, խուսափում են ամբողջ եռանդով գործելուց, պարբերաբար ձգտում են «մի կերպ աշխատել» և այլն, բավականին ադեկվատ է արտացոլում վարձու բանվորի վերաբերմունքն աշխատանքային գործունեության նկատմամբ: Չէ՞ որ կապիտալիստ ձեռնարկատիրոջ համար

արտադրության նպատակն ստացվող շահույթն է, վերջինիս ապահովումը՝ արտադրության կատարելագործման խթանը։ Նման իրադրությունում բանվորը հանդես է գալիս ընդամենը որպես աշխատուժի կրող, ուստի, այդպիսի աշխատանքն անխուսափելիորեն «կատարելագործում է բանվորին ու նսեմացնում մարդուն»[4]։ Բանվորն ինքը աշխատանքային գործունեությունն ընկալում է ոչ իբրև իր հոգևոր և ֆիզիկական կարողությունների դրսևորման ասպարեզ, իր սեփական կենսագործունեություն, այլ միմիայն իբրև գոյության միջոց, իբրև արտաքուստ պարտադրված, հարկադրական զբաղմունք։ Այսինքն, թե՛ տեխնոլոգիական և թե՛ սոցիալ-տնտեսական առկա գործոններն իսկապես խոչընդոտում էին բանվորի մոտ բուն աշխատանքի նկատմամբ գիտակցված պահանջմունքի ձևավորմանը, աշխատանքային գործունեության ընկալմանը որպես մի ինքնուրույն կենսական արժեք, բանվորի աշխատանքային ակտիվության աճին և այլն, և, ընդհակառակը, պայմանավորում էին աշխատանքի սուբյեկտի բացարձակ անտարբերությունն իր ստեղծած արդյունքների և աշխատանքի բովանդակության նկատմամբ։

Սակայն մեքենայական աշխատանքի այս օբյեկտիվ և սուբյեկտիվ հատկանիշները միմիայն իրենց՝ մեքենաների հետևանքը չեն, ինչպես որ դա պնդել ու պնդում են «տեխնոլոգիական հոռետեսության» հին ու նոր տեսաբանները։ Բուրժուական տնտեսագետների հասցեին ժամանակին Մարքսն ասել է, թե նրանք իրենց կոնցեպցիաներում աշխատանքի առարկայական մոմենտին մտացածին, կեղծ կարևորություն են վերագրում՝ ի հակակշիռ բուն աշխատանքի, գերագնահատում են դրա նշանակությունն աշխատանքի սուբյեկտիվ տարրի նկատմամբ, ձգտելով այդ կերպ, «նաև տեխնոլոգիապես արդարացնել այն ուրույն հասարակական ձևը, այսինքն՝ կապիտալիստական ձևը, ուր աշխատանքի և դրա պայմանների փոխհարաբերությունը շրջված է, ուր ոչ թե բանվորն է այդ պայմաններն օգտագործում, այլ պայմաններն են օգտագործում բանվորին»[5]։

Այսօր էլ, մարդու անխուսափելի ռոբոտացման, արդյունաբերության ավտոմատացման կործանարար հետևանքների, արդի գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ աշխատանքի հարաճուն օտարման և այլ ըմբռնումների հեղինակները, բացարձակացնելով աշխատանքի տեխնիկական միջոցների ազդեցության հարաբերական ինքնուրույնությունը, շրջանցում են հենց սոցիալ-տնտեսական գործոնը և, մասնավորապես, հասարակական արտադրության նպատակը, անմիջական արտադրողների սոցիալական վիճակը, աշխատանքային կոլեկտիվներում իշխող հասարակական հարաբերությունները։ Մինչդեռ առանց այս գործոնների հաշվառման «մարդ—տեխնիկա» փոխհարաբերության սոցիոլոգիական ըմբռնումը վերածվում է գռեհիկ ֆետիշիստական կամ իդեալիստական մեկնաբանման։ Եվ իրականում արևմտյան շատ սոցիոլոգների «տեխնիցիզմում» արտացոլվում են ոչ այնքան տվյալ հետազոտողի դիրքորոշումն ու նրա սխալները, որքան այն սոցիալ-տնտեսական պայմանները, որոնցում գործառնում է «մարդ—տեխնիկա» համակարգը. հաճախ հենց այդ պայմաններն էլ, ուղղակի կամ անուղղակի կերպով, պայմանավորում են բուրժուական մտածողի աշխարհայացքային, մեթոդաբանական դիրքորոշումը։

Այս առումով կարևոր է այն, որ մեքենայական արտադրության գոյավորումն էապես կապված է հասարակության սոցիալական որոշակի կառուցվածքի հետ։ Անցումն աշխատանքի գործիքներից մեքենաների համակարգին պատահական երևույթ չէր զարգացող բուրժուական հասարակության համար. եթե հատկապես XVIII դարի արդյունաբերական հեղափոխությունը նպաստեց կապիտալիստական արտադրաեղանակի հաստատմանը, ապա հենց վերջինս, իր բուն էությամբ, պայմանավորեց աշխատանքի միջոցների պատմական վերափոխումը, ինչպես Մարքսն է շեշտում, «դրանց վերածումը կապիտալին ադեկվատ աշխատամիջոցների»[6]։ Բանն այն է, որ կապիտալիստական արտադրությանը, որպես միաժամանակ և՛ աշխատանքի պրոցեսի, և՛ կապիտալի աճի պրոցեսի, ներհատուկ է կենդանի աշխատանքն առարկայացված աշխատանքին ենթարկելու ձգտումը։ Բայց միայն մեքենայական արտադրությունում, ուր,



տեխնոլոգիական անհրաժեշտությամբ, աշխատամիջոցները մեքենաների տեսքով ձեռք են բերում ինքնուրույն, առաջնային բնույթ բանվորների նկատմամբ, իսկ վերջիններս վերածվում են մեքենաների կենդանի կցորդների, աշխատանքի սուբյեկտի և աշխատամիջոցների նշված փոխհարաբերությունն ստանում է տեխնոլոգիական մարմնավորում, հանդես է գալիս իբրև, այսպես ասած, «տեխնոլոգիական փաստ»[7]։ Հետևապես, բուրժուական մտքի տեխնիցիզմը, այսինքն՝ արտադրության մարդկային գործոնի թերագնահատումը, արդյունք չէ իմացաբանական սխալների կամ ինքնին մեքենայական արտադրության, որն իսկապես ձևավորում է «պասսիվության մասնագիտացում»։ Պետք է ելնել հենց մեքենայական համակարգի և կապիտալիստական արտադրաեղանակի համապատասխանության փաստից, բուրժուական արտադրահարաբերության բուն էությունից։ Հասարակական արտադրության մյուս բոլոր նպատակները և, ամենից առաջ, անմիջական աշխատողների անհատականության զարգացումը, անխուսափելիորեն ենթարկվում են արդյունավետության իմպերատիվին, քանի որ մեքենայական տեխնիկան ապահովում է այդ արդյունավետությունը՝ կենդանի աշխատանքի սուբյեկտին «օգտագործելով» միայն որպես իր՝ գիտակցությամբ օժտված կցորդ (ասվածի վկայությունն է թեյլորյան սիստեմի հաջողությունը)։

Այսպիսով, թեյլորիզմը՝ քրտինք քամելու «գիտական» սիստեմը, մեքենայի միջոցով մարդու կեղեքման սիստեմը, ինչպես որակել է դրա սոցիալ-դասակարգային էությունը Վ. Ի. Լենինը՝ միաժամանակ նշելով և արտադրության կատարելագործման թեյլորյան մեթոդներում եղած օբյեկտիվ, դրական գիտելիքը, կյանքի կոչվեց ի պատասխան որոշակի հասարակական-քաղաքական կարիքների և, տեսական պլանով, կապիտալիստական հասարակարգի և մեքենայական արտադրության ադեկվատության արտացոլումն էր, ընդսմին՝ առավել անմիջական ու սոցիալ-դեմագոգիական պաճուճանքներից զերծ արտացոլումը՝ ի տարբերություն բուրժուական մենեջմենտի հետագա տեսությունների։

«ՄԱՐԴԿԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ» ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ՝ հաջորդելով թեյլորիզմին, հավակնում էր վերջինիս արատների հաղթահարմանը. համենայն դեպս այդպես էին մեկնաբանում այդ տեսության հետևորդները։ Ինչպես նշվեց, աշխատանքի կազմակերպման թեյլորյան սիստեմում բանվորի աշխատանքային շարժառիթը միմիայն ակնկալվող վարձատրությունն էր, իսկ ձեռնարկության անձնակազմը դիտվում էր ոչ իբրև սոցիալական բարդ կազմակերպություն, այլ մեկուսացված, բացարձակապես իրենց նեղ տնտեսական շահերը հետապնդող ինդիվիդների զանգված։ Սակայն, հասարակական արտադրության զարգացմանը, ձեռնարկությունների խոշորացմանը, բանվոր դասակարգի հասունացմանը զուգահեռ ակնհայտ էր դառնում „homo econmicuos„-ի կոնցեպցիայի՝ իբրև արտադրության կառավարման մեթոդի, իբրև բանվորների աշխատանքային եռանդը խթանելու միջոցի, սահմանափակությունը։ Այնպիսի գործոնների անտեսումը, ինչպիսիք են բանվորի վերաբերմունքն աշխատանքի և գործընկերների նկատմամբ, ձեռնարկությունում տիրող բարոյական մթնոլորտը, աշխատանքային խմբի համախմբվածության աստիճանը և այլն, խանգարում էր աշխատանքի արտադրողականության ցանկալի աճին։ «Սխալ է և վտանգավոր կարծել,— ընդգծում է ֆրանսիացի հայտնի սոցիոլոգ Ալեն Թուրենը,— թե տեխնիկական փոփոխությունների ու դրանց նկատմամբ վերաբերմունքի առավել սահմանափակ կոնցեպցիան հնարավորություն է ընձեռում լավագույնս ձևակերպել գործնական երաշխավորությունները։ Բազմաթիվ հետազոտություններ ցույց են տվել բանվորների աշխատանքային շարժառիթների խիստ պարզունակ կոնցեպցիայի ողջ սնանկությունը։ Չմոռանանք, որ ինդուստրիալ սոցիոլոգիայի առավել կարևոր արդյունքներից մեկը հենց դրամական խթանների թույլ արդյունավետության ապացույցն էր»։

Իրոք, թեյլորյան կոնցեպցիայի սահմանափակությունը հաստատվեց հռչակավոր «հոթորնյան հետազոտություններով», որոնց հետ էլ արևմտյան սոցիոլոգները կապում են ինդուստրիալ սոցիոլոգիայի ծնունդը (աշխատանքային

գործունեության ուսումնասիրությունը հետագայում չսահմանափակվեց միայն արդյունաբերության բնագավառով, ուստի և բելգիացի գիտնական Ա. Դուսեի առաջարկած «աշխատանքի սոցիոլոգիա» անվանումն ավելի ճիշտ է արտահայտում արևմտյան սոցիոլոգիայի բազմաթիվ հոսանքների ընդհանուր ուղղությունը): Չիկագո քաղաքի Հոտորն արվարձանում, «Վեստերն էլեկտրիկ» ընկերության ձեռնարկություններում Հարվարդի համալսարանի պրոֆեսոր Էլտոն Մեյոյի ղեկավարությամբ 1924—1932 թթ. անցկացված փորձերը բացահայտեցին աշխատանքի արտադրողականության կախումը հոգեբանական կարգի գործոններից: Պարզվեց, որ, Թեյլորի պատկերացումներին հակառակ, աշխատողների խումբը մի սոցիալական միկրոաշխարհ է, իսկ բանվորների աշխատանքային շարժառիթներում մեծ տեղ ունի կոմունիկատիվ գործոնը: Քննադատելով Թեյլորին «կոպիտ տեխնիցիզմի» համար, Է. Մեյոն արտադրության կազմակերպիչներին կոչ արեց «օգտագործել համագործակցության բուռն ձգտումը, որ հատուկ է յուրաքանչյուր մարդու», խթանել իր գործընկերների հետ մշտական կապի ձգտումը, որը, ըստ նրա, աշխատանքային կարևորագույն շարժառիթն է: Այդ եղանակով ազդելով բանվորների փոքր խմբերի վրա, Մեյոն հույս ուներ տարածել համագործակցության ոգին ո՛չ միայն աշխատանքային խմբերում, այլև բոլոր ձեռնարկություններում, ամբողջ հասարակությունում:

Մեյոյի երաշխավորությունները (որը հոգեբան էր և մնաց սոցիալական հոգեբանության շրջանակներում, չառաջադրելով իսկապես սոցիոլոգիական պրոբլեմներ) հետագայում հիմք դարձան «արդյունաբերությունում մարդկային հարաբերությունների» տեսության համար: Վերջինս, իր անժխտելի նվաճումներով հանդերձ, չկարողացավ ու չէր էլ կարող հաղթահարել թեյլորյան «տեխնիցիզմը»: Իրոք, ինչպես Թեյլորի, այնպես էլ «մարդկային հարաբերությունների» տեսության ներկայացուցիչների մոտ ձեռնարկատիրոջ ու բանվորի փոխհարաբերությունում ակտիվ, նախաձեռնող կողմը առաջինն է: Այլ կերպ չէր էլ կարող լինել. «մարդկային հարաբերություններն» իրենց ճշմարիտ, մարդկային իմաստով խորթ են սեփականատիրոջ և վարձու բանվորի հարաբերություններին, քանի որ դրանցում վերջինը եղել և մնում է լոկ առաջինի շահույթի ավելացման միջոց: Մեյոյի ու նրա հետևորդների «հակատեխնիցիզմի» երևութականությունն ավելի ակնհայտ է «մարդկային հարաբերությունների» տեսության գործնական կիրառման մեջ. Մեյոյի երաշխավորությունները ձեռնարկատերերի համար դարձան, ըստ էության, բանվորների ո՛չ միայն ֆիզիոլոգիական (ինչպես Թեյլորի սիստեմում էր), այլև հոգեբանական գործոնները քամելու միջոց: Իրոք, Հոտորնը աշխատավորների շահագործման նոր հնարավորություններ ստեղծեց. ձեռնարկատերերն զգացին, թե որքան են կորցնում՝ աշխատավորների նկատմամբ համապատասխան վերաբերմունքի բացակայության հետևանքով: «Այդ պահից ի վեր, սույն վիճակը վերացնելու համար,— վկայում է Բրյուսելի համալսարանի պրոֆեսոր, լիբերալ հայացքների տեր Մ. Բոլ դը Բալը,— ձեռնարկատերը պարտավոր էր իր անձնակազմին ցույց տալ, թե ինքը մտահոգված է նրանով և հիմնել խորհրդատու-հոգեբանների ինստիտուտ, որը պետք է լսի աշխատավորների գանգատները, լուծի անհատական լարվածությունները, կանխի հնարավոր սոցիալական բախումները: Ինտեգրացիա և համագործակցություն— այս հիմնական բառերը սեղմ արտահայտում էին նոր տիպի ձեռնարկատիրոջ, սոցիալական կապիտալիզմի նպատակները: Ինտեգրացիա նշանակում է, թե պետք է ստեղծել կորպորացիայի ոգի, ձեռնարկության համայնքի ոգի և անհատներին ինտեգրել այդ համայնքում: Համագործակցություն նշանակում է, թե պետք է գործադրել բոլոր միջոցները բանվորներին պասսիվ կատարողներից ակտիվ մասնակիցների վիճակի բերելու, նրանց կոոպերացիան և դինամիզմը գրգռելու համար, սակայն առանց վերափոխելու սեփականության և իշխանության ավանդական կառուցվածքը»: Այստեղ բավականին հստակ շարադրված է սոցիալական այն պատվերի էությունը, որի կատարմանը (կամա թե ակամա) հավաքագրված էին «մարդկային հարաբերությունների» մասնագետները: Դեռևս Թեյլորն էր հույս հայտնում, թե ձեռնարկատերերը «պետք է, որ հանգեն այն եզրակացության, որ բանվորների նկատմամբ ավելի լիբերալ քաղաքականությունն իրենց համար ավելի ձեռնտու կլինի[8]:



ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊԱՏՎԵՐՆ ԱՌԱՆՁՆԱՊԵՍ ՑԱՅՏՈՒՆ է արտահայտված աշխատանքի սոցիոլոգիայի ներկա փուլում, որն սկսվեց 50-ական թվականների վերջից: Արդի բուրժուական սոցիոլոգների տեսական կոնցեպցիաները և գործնական առաջարկությունները բնութագրական են ընդհանրապես ժամանակակից կապիտալիզմին, որը փորձում է հարմարվել նոր պայմաններին և, առաջին հերթին, խուսափել դասակարգային պայքարի՝ մասսայական հեղափոխական շարժման վերաճումից: Այստեղից էլ բուրժուազիայի ձգտումը՝ կիրառելու աշխատավորների շահագործման ու ճնշման ավելի քողարկված ձևեր, նրա պատրաստակամությունը՝ մի շարք դեպքերում դիմելու մասնակի ռեֆորմների, որպեսզի մասսաներին ըստ կարելվույն պահի իր գաղափարական ու քաղաքական վերահսկողության ներքո»[9]: Այնուամենայնիվ, իրադարձությունների ընթացքն ապացուցում է կապիտալիզմի կայունացման փորձերի ունայնությունը: Ու թեև կոմունիստները հեռու են կապիտալիզմի «ինքնափլուզման» մասին պնդումներից, «Սակայն վերջին տարիների իրադարձությունները նոր ուժով հաստատում են, որ կապիտալիզմը ապագայից զուրկ հասարակարգ է»[10]: Մինչդեռ արևմտյան բազմաթիվ սոցիոլոգների հետազոտությունները, հաճախ նրանց անմիջական նպատակից անկախ, կոչված են լրացնելու ապագայից զուրկ այդ հասարակարգի կենսունակության հիմնավորման միջոցների զինանոցը:

Անշուշտ, առանձին հարցերում բուրժուական սոցիոլոգիայի առաջադիմությունն անվիճելի է: Այսպես, եթե Թեյլորը մարդու աշխատանքային շարժառիթները հանգեցնում էր միմիայն տնտեսական խթաններին, եթե Մեյոն դրանք սահմանափակում էր համագործակցության, կոմունիկատիվ պահանջմունքով, այսինքն, աշխատանքային գործունեության շարժառիթները մատնացույց էին արվում բուն աշխատանքային պրոցեսից դուրս, արդի որոշ սոցիոլոգներ կարողանում են երբեմն հասնել մարդկային աշխատանքի սոցիոլոգիական արժեքի ըմբռնմանը, տեսնել աշխատանքի պրոցեսի նշանակությունը անհատի ձևավորման և զարգացման մեջ: «Մարդն ունի աշխատանքի պահանջմունք,— ընդգծում է ֆրանսիացի հայտնի փիլիսոփա Պոլ Շոշարը,— և նա երջանիկ է աշխատելիս... Մարդն աշխատում է ոչ միայն յուր ապրուստը հոգալու, այլ նախ և առաջ ստեղծագործական աշխատանք կատարելու համար»:

Աշխատանքի նկատմամբ բանվորի հետաքրքրության խթանում, աշխատանքի պրոցեսում ստեղծագործելու պահանջմունքի բավարարում, պատասխանատվության և ձեռներեցության, ինքնուրույնության դաստիարակում— ահա հիմնական բովանդակությունն այն խորհուրդների, որ այսօր աշխատանքի սոցիոլոգները տալիս են ձեռնարկատերերին: Վերջիններս ստիպված են զբաղվել նման հարցերով. այստեղ արտահայտվում են գիտատեխնիկական հեղափոխության հրամայական պահանջները: «Եթե միանգամայն հավաստի է, որ մեքենայացված ու մասնատված աշխատանքը պահանջում է հարկադրանքի վրա հիմնված արդյունաբերական կարգ ու կանոն, որպեսզի ապահովվեին հարաճուն տեմպեր,— իրավացիորեն նկատում է ֆրանսիացի մարքսիստ Էդուարդ Շոնին,— ապա ավտոմատացումը, ընդհակառակը, պահանջում է աշխատավորների ռեալ մասնակցությունը, նրանց գիտակից դերը»: Եվ այդ պահանջը «սկսում է գիտակցվել որպես անհրաժեշտություն նաև ձեռնարկատերերի կողմից: Ահա թե ինչու (բանվորների) ինտեգրման փորձերն այսպես համառ և սաստիկ են»:

Քննարկելով ավտոմատացման հնարավոր ազդեցությունները անհատի ու նրա աշխատանքային գործունեության զարգացման վրա, բուրժուական հետազոտողները խուսափում են ամենագլխավոր հարցից. ի վիճակի՞ է արդյոք պետական մոնոպոլիստական կապիտալիզմը լրիվ գործադրել գիտատեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորությունները հօգուտ բոլորի, արդյոք

բուրժուական արտադրահարաբերությունները ադեկվա՞տ են արտադրողական ուժերի զարգացման նոր մակարդակին: Զդնելով այս սկզբունքային հարցը, բուրժուական մտածողները ավտոմատացման ռեալ ընթացքից իրենց հիասթափությունը «հեշտորեն» տարածում են նաև սոցիալիստական հասարակության վրա, դիտելով գիտատեխնիկական հեղափոխության մարդկային պրոբլեմներն իբրև միանգամայն նույնական հակադիր սոցիալական սիստեմներում: Ամերիկյան փիլիսոփա Հենրի Սկոլիմովսկին, խորհրդածելով «Տեխնոլոգիայի և ազատության անտինոմիաների» մասին, պնդում է, թե հատկապես տեխնոկրատների, այդ «տեխնոլոգիական ուտոպիստների» մեղքով է, որ մարդկային պրոբլեմները հանգեցվում են տեխնոլոգիական պրոբլեմների, որ մարդիկ իրենք «ենթակա են տեխնոլոգիական համակարգի մասի վերածվելու վտանգին»: Արևմուտքում ընդհանրապես մոդայիկ է քննադատել տեխնոկրատներին, որոնց անխոհեմության պատճառով, իբր, հումանիզմը վտանգի տակ է: Արդի գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական պրոբլեմների առաջացման նման պատճառաբանումը, անշուշտ, «հարմար է» բուրժուական սոցիոլոգիային, քանի որ կրկին, ինչպես անցյալում, քողարկվում է մարդու և տեխնիկական միջոցների շրջված փոխհարաբերությունը: Իսկ այդ քողարկումը սոցիալական պատվերի ուղղակի պահանջն է, որին ծառայում են բուրժուական սոցիոլոգիական միտքը և կազմակերպական պրակտիկան՝ սկսած «գիտական մենեջմենտի» հիմնադիր Ֆր. Թեյլորից:

ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՅԻ այս նկարագիրն ավարտենք անգլիացի սոցիոլոգներ Բեյնոնի և Բլեքբեռնի խոստովանությամբ. «Աշխատանքի ուսումնասիրությունը մեր դարի սկզբից ի վեր դարձել է ինդուստրիալ սոցիոլոգների սպեցիֆիկ գործը, սակայն նրանց հետազոտություններից քչերում է հաջողվել ըմբռնել այն ամբողջ նշանակությունը, որ հասարակությունում ունի աշխատանքը: Դրա բազմաթիվ պատճառներ կան, առավել ակնհայտը սերտ կապն է դասական ինդուստրիալ սոցիոլոգիայի հետ՝ կառավարման իր նպատակներով և ձգտումներով: Այս, հիրավի, պերճախոս վկայությունը բնորոշ է ամբողջ արևմտյան սոցիոլոգիային. Հետազոտությունների խիստ ծառայողական բնույթն անդրադառնում է նաև մեթոդաբանական հարցերի վրա, խոչընդոտում օբյեկտիվ գիտական հետազոտությունները, դժվարացնում ուսումնասիրվող երևույթների կոմպլեքսային ընդգրկումը և իրոք սոցիոլոգիական վերլուծությունը:

Արևմտյան սոցիոլոգիայի ներկա ճգնաժամային վիճակը կապիտալիստական հասարակության գաղափարական-քաղաքական ճգնաժամի արտահայտություններից մեկն է:

1 Ф. У. Тэйлор, Научная организация труда, М., 1925, стр. 26—27.

2 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 47, стр. 509.

3 Նույն տեղը, էջ 504, 511:

4 К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1956, стр. 533.

5 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 26, ч. III, стр. 285.

6 Նույն տեղը, հ. 46, II մաս, էջ 205:

7 Նույն տեղը, հ. 47, էջ 551:

8 Ф. У. Тэйлор, նշվ. աշխ., էջ 6:

9 ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 18—19:

10 Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, Ե., 1976, էջ 46:

# ԻՍԱՀԱԿ ԼԱԼԱՅԱՆՑԸ ԿԱԶԱՆՈՒՄ

Ի. Պ. ԿՈՒԶՆԵՑՈՎԱ

XIX ԵՎ XX ԴԱՐԵՐԻ ՍԱՀՄԱՆԱԳԼԽԻՆ մարքսիզմի տարածումը Ռուսաստանում արմատական բեկում էր հեղափոխական-ազատագրական շարժման զարգացման մեջ: Այդ բեկումն արտահայտվում էր նրանով, որ քննադատաբար վերաիմաստավորվում էին պայքարի գոյություն ունեցող ձևերն ու մեթոդները, և ձևավորվում էր նարոդնիկներին ու նարոդովոլականներին փոխարինելու եկած հեղափոխականների մի նոր սերունդ: Այդ սերունդը ձևավորվում էր անլեգալ խմբերում ու խմբակներում, որտեղ ուսումնասիրում էին մարքսիզմը, նոր ուղիներ որոնում իր դարն ապրած նարոդնիկական գաղափարախոսության դեմ մղվող վճռական պայքարում:

Հեղափոխական շարժման զարգացման և մարքսիզմի պրոպագանդման գործում մեծ ավանդ ներդրեց պրոֆեսիոնալ հեղափոխականների այն հիանալի համաստեղությունը, որն աներեր ընթացավ լենինյան ուղիով: Լենինյան գվարդիայի առաջին ներկայացուցիչներից էր և Ի. Խ. Լալայանցը: Նրա հեղափոխական կենսագրությունն սկսվում է դեռ վաղ պատանեկան տարիներից, Ն. Ե. Ֆեդոսեևի խմբակներից մեկում, մի գործչի, որին չափազանց բարձր էր գնահատում Վ. Ի. Լենինը, նրան համարելով արտասովոր տաղանդավոր և իր գործին արտասովոր նվիրված հեղափոխական (տե՛ս Երկեր, հ. 33, էջ 539), և որը հսկայական դեր է խաղացել Պովոլժիեում մարքսիզմի պրոպագանդման ու տարածման գործում:

Ն. Ե. Ֆեդոսեևի խմբակում անցնելով ընդհատակյա պայքարի իսկական դպրոց՝ Ի. Խ. Լալայանցն արդեն 1888—1889 թթ. ինքնուրույն հեղափոխական աշխատանք էր կատարում Կազանում: «Հեղափոխական սոցիալ-դեմոկրատական շարժմանը մասնակցում էր 80-ական թվականների վերջերից, 1888—1889 թթ. ձմռանը Ն. Ե. Ֆեդոսեևի հետ միասին Կազանում զբաղվում էր սովորող երիտասարդության շրջանում մարքսիստական խմբակներ կազմակերպելով (Ленинский сборник, т. VII, стр. 66):

1889 թ. ամռանը Ն. Ե. Ֆեդոսեևի Կազանի խմբակների ձախողումից հետո նրա ակտիվ հետևորդներից շատերն արտաքսվեցին Ռուսաստանի տարբեր քաղաքներ: Նրանք հանդես էին գալիս որպես հեղափոխական գաղափարների կրողներ, դառնում կազմակերպող կենտրոններ տեղերում, նպաստում մարքսիզմի տարածմանը: Ֆեդոսեևականների գործունեության հարցերը քիչ են ուսումնասիրված և լուսաբանված պատմակուսակցական գրականության մեջ: Այդ ուսումնասիրությունն ունի խոշոր գիտաճանաչողական նշանակություն, որովհետև բացահայտում է մարքսիզմի տարածման ուղիները, հեղափոխական ավանդույթների հաջորդականությունը, ֆեդոսեևյան խմբակների գործունեության էությունը: Այդ առումով չափազանց կարևոր է ու բնորոշ Ի. Խ. Լալայանցի անձնավորությունը, որ 1889 թ. ամռանը նույնպես արտաքսվեց Կազանից:

1889 թ. աշնանը Ի. Խ. Լալայանցը կրկին վերադարձավ Կազան: Լալայանցի կյանքի ու գործունեության կազանյան ժամանակաշրջանը նրա կենսագրության ամենից քիչ հայտնի էջերից է: Փաստական, առավելապես արխիվային նյութի հիման վրա այդ ժամանակաշրջանի լուսաբանմանն է նվիրված սույն հոդվածը, որի նպատակն է ընդլայնել ու հարստացնել ֆեդոսեևականների ընդհատակյա հեղափոխական գործունեությանը վերաբերող տվյալները:

1888—1892 թթ. ժամանակաշրջանը, այսինքն՝ ֆեդոսեևական խմբակների ջախջախումից սկսած մինչև 1892 թ. վերջին Ա. Ստոպանիի և Ն. Բաումանի խմբակի կազմակերպումն ընկած ժամանակաշրջանը, Կազանի պատմաբանները համարում են ամենից քիչ ուսումնասիրված, ուստի Ի. Խ. Լալայանցի գործունեության հարցը հատուկ հետաքրքրություն ունի: Դեռևս 20-ական թվականներին այդ հարցը բարձրացրել է Վ. Ի. Նևսկին, իսկ վերջին տարիներին՝ Ա. Գ. Ցիունչուկը, մի բան, որ վկայում է նրա այժմեականության մասին (տե՛ս **В. И. Невский. «Очерки по истории Российской Коммунистической партии,** стр. 305—309 и

և Վիլնոյում (նույն տեղը, т. II, лл. 10, 61, 62, 244)։ Գանզարտի խոստովանությամբ, Լալայանցի որոնումը և Կազանում հայտնաբերելը զգալիորեն դժվարանում էր Լալաև ազգանունով[1]։ Այս փաստն ինքնին վկայում է, որ Ի. Խ. Լալայանցը միանգամայն որոշակի մտադրություններ է ունեցել՝ Նիժնի Նովգորոդից տեղափոխվելով Կազան։

1893 թ. հունվարի 2-ին Լալայանցի մոտ խուզարկություն կատարեցին և նրան ուղարկեցին բանտի մենախուց, որտեղ գտնվում էր մինչև 1893 թ. փետրվարի 11-ը[2]։

Հարցաքննությունների ժամանակ Ի. Խ. Լալայանցը լիովին ժխտել է իր մասնակցությունը որևէ խմբակի, իր ծանոթությունը Կ. Ե. Օստրյանինի և մյուս անձանց հետ, որոնցից պատասխանատվության էր կանչվել ավելի քան 50 մարդ։ Հետաքննությանը ոչ միայն չհաջողվեց բացահայտել Լալայանցի ամբողջ գործունեությունը, այլև ապացուցել նրա մեղավորությունը։ Նրա ցուցմունքները բացարձակապես ոչինչ չտվեցին հետաքննությանը, բացի դրանց «անարժանահավատության» վերաբերյալ համոզմից, մի բան, որի մասին Գանզարտը հաղորդել է ոստիկանության դեպարտամենտին։

Լալայանցին մեղադրանք ներկայացվեց միայն այն բանի համար, որ նա կապեր է պահպանել հակակառավարական անձանց հետ և անլեգալ գրականություն պահել։ Պատահական չէ, որ Մ. Գրիգորևին հղած նամակներից մեկում Լալայանցը քննադատել է Գանզարտի կարգադրությունը իրեն ձերբակալելու մասին։ Հետաքննությունը վերջանալուց հետո Ի. Խ. Լալայանցին առաջարկվեց երեք օրվա ընթացքում հեռանալ Կազանից և նշվեց նոր բնակության վայրը։ Ընդ որում, նրան չէր թույլատրվում ապրել մայրաքաղաքներում, համալսարանական և ֆաբրիկա-գործարանային կենտրոններում, ինչպես նաև Սարատովում, Նիժնի Նովգորոդում, Տվերում, Թիֆլիսում[3]։ Նա կանգ առավ Սամարայի վրա։ 1893 թ. փետրվարի կեսերին, ընկնված ամենամռայլ մտքերից, մեկնեց այնտեղ՝ ոստիկանության հրապարակային հսկողության տակ։ Սամարայում նա պետք է սպասեր գործի վերաբերյալ դատավճռին, բայց դա չխանգարեց նրան մի քանի հասցեներ ստանալ, որպեսզի նոր քաղաքում իրեն չզգա «որպես բոլորովին մի ինչ-որ Ռոբինզոն»։ Կազանից մեկնելով՝ ավարտվում է Ի. Խ. Լալայանցի հեղափոխական կենսագրության առաջին ժամանակաշրջանը։

Այդ ժամանակաշրջանում Ի. Խ. Լալայանցը Կազանի և Նիժնի Նովգորոդի մարքսիստական, սոցիալ-դեմոկրատական խմբակներում և ամենից առաջ Ն. Ե. Ֆեդոսեևի խմբակում անցավ հեղափոխական պայքարի իսկական դպրոց։ Նա այն քչերից մեկն էր, ովքեր իրենց տեսական համառ աշխատանքով դարձան համոզված մարքսիստներ։

Դեռևս 80-ական թվականների կեսերից բռնելով հեղափոխական պայքարի ուղին, Ի. Խ. Լալայանցը դարձավ Ռուսաստանի մարքսիստների նոր սերնդի ներկայացուցիչը։ Նրա աշխարհայացքը ձևավորվեց նարոդնիկական գաղափարախոսության դեմ մղված համառ ու անհաշտ պայքարում։ Սակայն մերժելով նարոդնիկների ու նարոդովոլականների տեսությունն ու տակտիկան՝ նա, ինչպես և մյուս մարքսիստները, նրանցից ընդունեց այն ողջ լավը, որ այդ ուղղությունը տվել էր կազմակերպական բնագավառում, և ամենից առաջ ընդհատակի պայմաններում նրանց կատարած կոնսպիրատիվ աշխատանքի փորձը։


## РЕЗЮМЕ

Данная статья на основе архивных материалов, воспоминаний старых большевиков освещает малоизвестные страницы революционной биографии верного ленинца, профессионального революционера И. Х. Лалаянца. В статье рисовываются условия, формы и методы нелегальной работы в период распространения марксизма в Казани.


[1] *Տե՛ս* ЦГАОР, ф. 102, 4 ДП, оп. 189, 1893 г., д. 237, т. 11 лл. 191—322 об.

[2] *Տե՛ս* ЦГА Татарской АССР, ф. 390, оп. 1893 Е. ед. хр. 214, л. 17; ЦГИАЛ, ф. 1405, оп. 93, ед. хр. 10600, л. 37.

[3] *Տե՛ս* ЦГАОР, ф. 102, 3 ДП, оп. 1889 г., ед. хр. 624, лл. 2—об 3. (И. Х. Лалаянц. «У истоков большевизма, стр. 8).



# ՍՏՈՐԻՆ ՕՂԱԿՆԵՐԸ՝ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ


**Ա. Գ. ԳՈՒՐՈՒՆՅԱՆ**
ՀԿԿ 26 կոմիսարների անվան շրջկոմի
երկրորդ քարտուղար


*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ 26 ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ անվան շրջանային կոմիտեն մշտապես իր տեսադաշտում է պահում արտադրությանն ավելի մոտ կանգնած, կուսակցական ստորին օղակների՝ արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսակցական խմբերի աշխատանքը։ Նրանց արդյունավետ գործունեությունն ու բարձր ակտիվությունն սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության ամրապնդման երաշխիքն են։*

*ՍՄԿԿ XXV համագումարը կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացումը պայմանավորեց նրանով «թե որքան մարտականորեն և նախաձեռնորեն են աշխատում* սկզբնական կուսակցական կազմակերպությունները, *որոնք կազմում են մեր կուսակցության հիմքը»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *«Հայաստան» հրատ., 1976 թ., էջ 100)։ Կուսակցությունն անչափ կարևորում է սկզբնական կուսկազմակերպությունների դերը մասսաների կենդանի ստեղծագործության հետ կուսակցության քաղաքականության միահյուսման, տնտեսական, քաղաքական և գաղափարա-դաստիարակչական խնդիրների հաջող լուծման գործում։ Այս գնահատականը հավասարապես վերաբերում է նաև արտադրամասային սկզբնական կուսկազմակերպություններին ու կուսխմբերին, որոնք անմիջականորեն, առավել սերտորեն են առնչվում աշխատավորական լայն զանգվածների հետ։ Եվ, բնականաբար, սկզբնական կուսկազմակերպությունները, հանդիսանալով աշխատավորական կոլեկտիվների ղեկավար կորիզը, իրենց ամենօրյա գործունեության ընթացքում հենվում են արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսխմբերի վրա, նրանց միջոցով և գործուն օգնությամբ լուծում ամեն մի փոքր ու մեծ խնդիր։*

*Գործելով արտադրության ստորին օղակներում՝ արտադրամասերում, հերթափոխություններում, տեղամասերում, բրիգադներում, արտադրամասային կուսկազմակերպություններն ու կուսխմբերը լայն հնարավորություններ ունեն՝ օպերատիվ կերպով ազդելու գործերի վիճակի վրա, ամեն օր շփվելու և աշխատանք տանելու այդ օղակներում ընդգրկված յուրաքանչյուր մարդու հետ։ Այժմ շրջանի արտադրական ձեռնարկություններում և աշխատավորական այլ*

կերպությունը ձեռնարկությունում առաջինն արձագանքեց կուսկոմիտեի՝ հումքի, էներգառեսուրսների և աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման վերաբերյալ նախաձեռնությանը։ 1976 թ. նոյեմբերից մինչև 1977 թ. փետրվարը գործարանում հայտարարված խնայողության ստուգատեսի ժամանակ էլեկտրոլիզավարները խոստացել էին տնտեսել 115 տոննա կավահող, 55 տոննա անոդային զանգված, 3 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, աշխատանքի ռացիոնալ օգտագործմամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 1,2 տոկոսով։ Նրանք պատվով կատարեցին իրենց խոստումը։ Եվ սա, ինչ խոսք, եզակի օրինակ չէ։

Երևանի էլեկտրալամպերի գործարանի հատուկ լամպերի հավաքման արտադրամասի «Ա» հերթափոխության կուսխմբի կոմունիստների համար ավանդույթ է դարձել մեր երկրում տեղի ունեցող կարևոր յուրաքանչյուր իրադարձություն նշանավորել արտադրական հաջողություններով, կուսակցության որոշումներին ու կոչերին պատասխանել հարվածային աշխատանքով ու հայրենասիրական նոր նախաձեռնություններով։ Կուսխմբի կազմակերպիչ Գ. Թադևոսյանի ղեկավարած բրիգադը, ի պատիվ ՍՄԿԿ XXV համագումարի, խոստացել էր խնայված նյութերի հաշվին թողարկել 50 հազար հատ ավտոլամպ։ Եվ խոսքը գործի վերածվեց։ Այնուհետև բրիգադը հանդես եկավ «Տասներորդ հնգամյակը՝ 50 ամսում» հայրենասիրական նոր նախաձեռնությամբ։ Խմբի բոլոր կոմունիստները տեղաբաշխված են արտադրության վճռական տեղամասերում, և նրանցից յուրաքանչյուրը հայրենանվեր աշխատանքի օրինակ է տալիս։ Կուսխմբի ժողովներում լսվում են կոմունիստների հաշվետվությունը՝ ՍՄԿԿ կանոնադրական պարտականությունների կատարման, խնայողության ռեժիմի պահպանման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման և արտադրության շահերից բխող այլ կարևոր հարցերի մասին։ Շարունակելով լավագույն ավանդույթները՝ կուսխումբը հետևողական աշխատանք է տանում կոլեկտիվի առջև ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Գ. Թադևոսյանի ղեկավարած բրիգադն զգալիորեն գերակատարել է ընթացիկ տարվա առաջին երկու ամիսների պլանը, տնտեսել մեծ քանակությամբ նյութեր ու կիսաֆաբրիկատներ։ Այս առաջավոր կոլեկտիվը հանդես է եկել «Բարձր որակի և արտադրողականության համար» նախաձեռնությամբ և պարտավորվել մինչև մեծ Հոկտեմբերի 60-ամյակը խնայված նյութերի հաշվին լրացուցիչ թողարկել 60 հազար հատ ավտոլամպ։

Կուսակցական խումբն արտադրանքի որակի բարձրացումը համարում է իր ամենօրյա ու կենսական գործը։ Կոմունիստ Մ. Մուխոյանի ղեկավարած բրիգադի կոլեկտիվն աշխատում է անձնական դրոշմանիշով։ Կուսխմբի անդամներից շատերն ակտիվորեն մասնակցում են ռացիոնալիզատորական շարժմանը, հանդես գալիս արժեքավոր նախաձեռնություններով։ Կուսխումբն զբաղվում է կոլեկտիվի քաղաքական դաստիարակությամբ, իր ժողովներում քննարկում այդ բնույթի հարցեր։ Վերջերս, օրինակ, ժողովը լսեց կոմունիստ Ս. Սարգսյանի հաղորդումը կոլեկտիվի անդամների սովորող երեխաների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի վիճակի մասին և որոշեց ուժեղացնել կապը դպրոցների, մանկավարժական կոլեկտիվների հետ։

Ձեռնարկության կուսկոմիտեն գործնական օգնություն է ցույց տալիս արտադրամասային կուսկազմակերպություններին ու կուսխմբերին, վերահսկում նրանց գործունեությունը։ Նա անցկացնում է քարտուղարների ու կուսխմբերի կազմակերպիչների սեմինարներ, խորհրդակցություններ, որոնցում քննարկվում են արտադրամասային կուսկազմակերպությունների ու կուսխմբերի գործունեությանը վերաբերող բազմաբնույթ հարցեր, ընդհանրացվում է առաջավոր փորձը։ Նրանց մարտունակության բարձրացման, քարտուղարների ու կազմակերպիչների ընտրության ու դաստիարակության վերաբերյալ շատ հարցեր են քննարկվել կուսկոմիտեում։

Երևանի էլեկտրալամպերի գործարանը տարիներ շարունակ քայլում է հանրապետության ու Միության առաջավոր կոլեկտիվների շարքում, մշտա-



պես կատարում ու գերակատարում ստանձնած սոցպարտավորություններն ու պետական առաջադրանքները։ Եվ այդ հաջողություններում մեծ է կուսակցական խմբերի ու արտադրամասային կուսկազմակերպությունների ներդրումը։ Նրանք կարողանում են կուսակցական ճիշտ ղեկավարություն ու արդյունավետ վերահսկողություն ապահովել արտադրության բոլոր օղակներում։

Երևանի ժամացույցի գործարանի մամլման արտադրամասը 1976 թ. միջարտադրամասային սոցիալիստական մրցությունում վեց անգամ մրցանակային տեղ է գրավել։ Արտադրամասի հաջողություններում արժանի ավանդ ունի թերմոպլաստ տեղամասի կուսխումբը։ Նրա կազմակերպիչ Վ. Նազարեթյանը կարողանում է գտնել մարդկանց հետ տարվող աշխատանքի ճիշտ ձևեր ու մեթոդներ։ Խմբի ժողովներն անցնում են գործնական մթնոլորտում, բոլոր կոմունիստները ելույթ են ունենում, սկզբունքային գնահատական տալիս իրենց աշխատանքին, կոնկրետ առաջարկներ անում թերությունների վերացման համար։ Կուսխմբի կազմակերպիչը խնամքով նշումներ է կատարում իր օրագրում կոմունիստների առաջադրած բոլոր հարցերի, քննադատական դիտողությունների վերաբերյալ, անհրաժեշտության դեպքում դրանք ներկայացնում արտադրամասային կուսբյուրոյին կամ ձեռնարկության կուսկոմիտեին՝ լուծելու համար։ Այսպես, խմբի ժողովներից մեկում քննարկվում էր թողարկվող արտադրանքի որակի բարելավման հարցը։ Կոմունիստներ Ա. Գրիգորյանը, Գ. Մկրտչյանը ելույթ ունեցան և քննադատեցին գլխավոր մեխանիկի, գլխավոր ինժեների ծառայությունները՝ կամրջային ամբարձիչի նորոգումն անհանգուրժելիորեն ձգձգելու համար։ Ժողովը որոշեց հարց հարուցել կուսկոմիտեի առջև՝ արագացնելու կամրջային ամբարձիչի նորոգումը, որն զգալիորեն կնպաստի թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը։ Կուսկոմիտեն կոնկրետ հանձնարարականներ տվեց համապատասխան ծառայություններին և ժամկետ սահմանեց խմբի անդամների առաջադրած հարցերի լուծման նպատակով։ Արդյունավետ անցավ նաև խնայողության վերաբերյալ հարցի քննարկումը։ Բանն այն է, որ այստեղ հիմնական նյութը խիստ ֆոնդավորված է, և դրա հայթայթումը դժվարությունների հետ է կապված։ Քննարկելով այդ հարցը, խմբի բոլոր կոմունիստները գործնական որոշում ընդունեցին՝ արտադրական մնացուկները տեսակավորելու, վերամշակելու, արտադրության մեջ օգտագործելու համար։ Արդյունքը գոհացուցիչ է. ամեն ամիս տրվում է 150—200 կգ հիմնական նյութերի խնայողություն։

Կուսխումբը լավ փորձ է կուտակել նաև մարդկանց բարոյա-քաղաքական դաստիարակության բնագավառում։ Կոմունիստ Պ. Սեդրակյանը սիստեմատիկաբար բացակայում էր քաղխմբակի պարապմունքներից, անբավարար էր զբաղվում իր գաղափարա-քաղաքական մակարդակի բարձրացմամբ։ Այդ հարցը դարձավ խմբի ժողովի քննարկման առարկա։ Լսվեց Պ. Սեդրակյանի հաշվետվությունը՝ ՍՄԿԿ կանոնադրական պարտականությունների կատարման մասին։ Սկզբունքային խոսակցություն ծավալվեց։ Խմբի կոմունիստները Սեդրակյանից խստորեն պահանջեցին՝ բարձրացնել քաղաքական ակտիվությունը, ապահովել ավանգարդային դերը ո՛չ միայն արտադրությունում, այլև հասարակական կյանքում։

Արտադրամասային կուսկազմակերպությունները և կուսակցական խմբերը, իրոք, խոշոր դեր են կատարում արտադրության ստորին օղակներում կուսակցական, պետական կարգապահությունն ամրապնդելու, արտադրական առաջադրանքների կատարման համար մարդկանց ուժերը մոբիլիզացնելու գործում։ Դրա համոզիչ վկայությունն է նաև ավտոմոբիլային գործարանի հավաքման արտադրամասի կուսկազմակերպության օրինակը։ Անցած տարվա սկզբին արտադրամասի երկրորդ հերթափոխում, որը ղեկավարում է կոմունիստ Հ. Կարապետյանը, գործերը վատացան։ Արտադրամասի կուսբյուրոն նախապատրաստեց հարցը և այն 1976 թ. փետրվարին քննարկման ներկայացրեց կուսժողովում։ Պարզվեց, որ հերթափոխի անհամաչափ աշխատանքի գլխավոր պատճառներն են՝ աշխատանքային ցածր կարգապահությունը, մեծ չափերի հասնող պարապուրդները, իրենց անելիքների նկատմամբ առանձին

կոմունիստների անտարբեր վերաբերմունքը: Ընդունված որոշման կատարումը հսկողության տակ վերցրեց արտադրամասի կուսբյուրոն: Որոշմամբ միաժամանակ հարց հարուցվեց կուսկոմիտեի առջև՝ զբաղվել տեղամասի մարդկանց աշխատանքային պայմանների բարելավմամբ: Հետևողականությունը, ինչպես միշտ, այս անգամ ևս լավ արդյունք տվեց. կարճ ժամանակում տեղամասում գործերի վիճակը բարելավվեց, և երկրորդ հերթափոխի մարդիկ առաջիններից մեկը զեկուցեցին 1976 թ. պետական առաջադրանքների կատարման մասին:

Կոմունիստների ակտիվության բարձրացման գործում մեծ դեր են խաղում կուսակցական հանձնարարությունները: Կուսխմբերի կազմակերպիչները և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարները գործնականորեն մտահոգվում են, որպեսզի ո՛չ միայն իրենց, այլև սկզբնական կուսկազմակերպությունների կոմիտեների կամ բյուրոների և իրենց իսկ կողմից կոմունիստներին տրված հանձնարարությունները ձևական չլինեն, բխեն տվյալ կոլեկտիվի առջև ծառացած կոնկրետ խնդիրներից, համապատասխանեն մարդկանց ուժերին ու հնարավորություններին: Այդ տեսակետից բնորոշ է ռելեի գործարանի հավաքման № 10 արտադրամասի Գ. Պարյանի ղեկավարած կուսխմբի օրինակը: Այստեղ բոլոր կոմունիստներն ունեն կուսակցական հանձնարարություն և բարեխղճությամբ են կատարում այն: Այդ գործում հատկապես լավ են դրսևորում իրենց կուսխմբի կազմակերպիչ, երիտասարդ կոմունիստ Գ. Պարյանը (որը միաժամանակ ձեռնարկության կուսկոմիտեի անդամ է), Զ. Մուսոյանը, Ռ. Հակոբյանը և ուրիշներ: Խմբի կոմունիստները լավ նախաձեռնություն են հանդես բերել. յուրաքանչյուրն ստանձնել է սկսնակ բանվորներին մասնագիտություն սովորեցնելու շեֆությունը: Մարդկանց հետ աշխատելու լավ փորձ ունի նաև արտադրամասի՝ Անահիտ Մանուկյանի ղեկավարած կուսխումբը: Այստեղ ամուր հիմքերի վրա են դրված կուսակցական կարգապահությունը, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը:

Կուսակցական խմբերը, ինչպես ասացինք, ավելի մոտ են կանգնած ու լավ են ճանաչում արտադրության մարդկանց, հետևապես և կարող են ճիշտ բնութագրել նրանց, օբյեկտիվ գնահատական տալ իրենց ընկերների գործունեությանը: Ձեռնարկության աշխատողների 70 տոկոսը երիտասարդներ են, նրանցից լավագույնները, բնականաբար, դիմում են ՍՄԿԿ շարքերն ընդունվելու համար: Այստեղ է, ահա, որ խմբերը կարող են որոշիչ դեր խաղալ: Եվ, իրոք, մինչև սկզբնական կուսկազմակերպության բյուրոյում նրանց դիմումի քննարկումը, հարցը լսվում է կուսխմբի ժողովում: Խմբի անդամները հայտնում են իրենց կարծիքը, և նոր միայն դիմումն ընթացք է ստանում:

Խոսելով արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսակցական խմբերի դերի, նշանակության, նրանց մարտունակության մասին, անհրաժեշտ է նշել մի կարևոր հանգամանք ևս: Խոսքն այն մասին է, թե կուսխմբերն ու արտադրամասային կուսկազմակերպություններն ինչպիսի օգնություն ու ղեկավարություն են ստանում սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներից և կոմիտեներից: Արդեն խոսվեց էլեկտրալամպերի, ժամացույցի, ավտոմոբիլային, ալյումինի, ռելեի գործարանների կուսխմբերի ու արտադրամասային կուսկազմակերպությունների լավ աշխատանքի մասին, որոնց հաջողություններն արդյունք են այն բանի, որ կուսկոմիտեները և կուսբյուրոները մշտական ուշադրություն են նվիրում նրանց գործունեությանը, անհետևանք չեն թողնում նրանց բարձրացրած ոչ մի պահանջ:

Սակայն, ցավոք, շրջանի ձեռնարկություններում դեռևս կան կուսկոմիտեներ ու կուսբյուրոներ, որոնք անբավարար են զբաղվում խմբերի, արտադրամասային կազմակերպությունների գործունեությամբ, նրանց ցույց չեն տալիս անհրաժեշտ օգնություն: Այստեղ խոսքը ո՛չ միայն այն մասին է, որ պետք է անհրաժեշտ ուշադրություն նվիրվի ստեղծված խմբերի ու արտադրամասային կուսկազմակերպությունների աշխատանքին, այլև այն մասին, որ հարկ է ստեղծել նոր խմբեր ու արտադրամասային կուսկազմակերպություններ, բացառել մակերեսայնությունն ու ձևականությունն այդ գործում: Կուսակցական խմբերի ստեղծման ժամանակ անհրաժեշտ է հաշվի առնել դրանց



աշխատանքի առանձնահատկությունը, հերթափոխությունը, արտադրական խնդիրները: Մինչդեռ կան կուսկազմակերպություններ («Հայէներգանորոգում», հուշանվերների գործարաններ, № 4 սննդառ, որոշ շինվարչություններ), որտեղ բավարարար աշխատանք չի տարվում կուսխմբերի ստեղծման, առաջավոր փորձի տարածման համար:

Կուսակցության շրջանային կոմիտեն ջանում է շտկել սկզբնական կուսկազմակերպությունների այդ սխալները, նրանց ուշադրությունը կենտրոնացնում կուսխմբերը և արտադրամասային կուսկազմակերպություններն ամենուրեք մարտունակ օղակներ դարձնելու վրա: Դա, անշուշտ, կբարձրացնի շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի մակարդակը, կնպաստի կոմունիստների և բոլոր աշխատավորների ակտիվության ու նախաձեռնության զարգացմանը, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների անթերի կատարմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.), ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումների որոշումներում ամբողջ սրությամբ առաջ քաշվեցին արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակին առնչվող, ղեկավարման ոճի, ձևերի ու մեթոդների կատարելագործման, կուսակցական, սովետական, տնտեսական ապարատի հստակ ու ճկուն աշխատանքի ապահովման, կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման, վստահված գործի նկատմամբ կադրերի անձնական պատասխանատվության, աշխատավորների գաղափարա-քաղաքական դաստիարակության մակարդակի բարձրացման հարցերը:

Կուսշրջկոմը հետևողական աշխատանք է կատարում այդ պահանջների իրականացման գործում ստորին օղակների՝ արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսխմբերի դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու, կոմունիստների ակտիվությունն ու նախաձեռնությունը զարգացնելու համար: Այժմ ողջ կազմակերպական-քաղաքական աշխատանքն ուղղված է մեծ Հոկտեմբերի 60-ամյա հոբելյանը հայրենանվեր գործերով դիմավորելու համար սոցիալիստական մրցության ծավալմանը, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ համամիութենական սոցիալիստական մրցության մասին հայտնի որոշման կենսագործման ապահովմանը: Շրջանի արտադրամասային կուսկազմակերպություններն ու կուսխմբերը ակտիվորեն ներգրավվել են համաժողովրդական այդ պայքարի մեջ և գործում են պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները անհապաղ կատարելու վճռականությամբ:

# ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԴԵՄՔԸ

**Հ. Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ**
ՀԿԿ Կիրովականի քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նշեց, որ մարքսիզմ-լենինիզմի մասսայական ուսումնասիրությունն արդի փուլում հասարակական գիտակցության զարգացման կարևորագույն առանձնահատկությունն է։ Համագումարը պահանջեց կոմունիստների և անկուսակցականների ավելի ու ավելի լայն զանգվածներ ընդգրկել կուսակցական ուսուցման մեջ, հատուկ հոգատարություն ցուցաբերել այդ աշխատանքի բովանդակության հարստացման, նրա տեսական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Այս առնչությամբ ՀԿԿ Կիրովականի քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մշակել և իրականացնում են մի շարք միջոցառումներ՝ կոմունիստների, բոլոր կադրերի քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման շրջանակներն ընդլայնելու և արդյունավետությունը բարձրացնելու, դրա ձևերն ու մեթոդները կատարելագործելու համար։

Պրակտիկան վկայում է, որ տեսական սեմինարների, քաղդպրոցների պարապմունքների խոր բովանդակությունը, բարձր արդյունավետությունը, առաջին հերթին, պայմանավորված են պրոպագանդիստական կադրերի բանիմաց ու ակտիվ գործունեությամբ։ Ջուր չի առված, թե պրոպագանդիստը քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման կենտրոնական դեմքն է։ Քաղկոմն ու սկզբնական կուսկազմակերպություններն ամեն ինչ անում են, որպեսզի նրանք մշտապես գտնվեն իրենց կոչման բարձրության վրա։

ՍՄԿԿ Կենտկոմը «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցական ուսուցման խնդիրների մասին» հայտնի որոշմամբ պահանջում է կուսակցական կոմիտեներից՝ պրոպագանդիստական գործունեության մեջ ներգրավել քաղաքականապես հասուն, գաղափարապես կոփված, այդ գործը սիրող, հարուստ գիտելիքներ ունեցող մարդկանց։ Միաժամանակ խնդիր է դրվում հոգատարությամբ վերաբերվել պրոպագանդիստական կադրերին, նրանց պարտականությունը դիտել որպես կարևորագույն կուսակցական հանձնարարություն, խրախուսել նրանց շնորհակալ աշխատանքը։

Ընթացիկ ուսումնական տարում պրոպագանդիստական կադրերի ընտրության գործում կուսքաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ղեկավարվեցին այդ որոշման պահանջներով։ Մենք օգնում ենք սկզբնական կուսկազմակերպություններին՝ ճիշտ ընտրելու պրոպագանդիստներին, պարզելու, թե ինչպիսի տրամադրությամբ է կոմունիստն ստանձնում կուսակցական այդ պատասխանատու հանձնարարությունը, արդյոք հակում ունի՞ այդ գործի նկատմամբ, պատրա՞ստ է դրան, թե՞ ոչ։

Վերջին տարիներին նկատելիորեն բարելավվել է պրոպագանդիստական կադրերի որակական կազմը։ Ուշագրավ է, որ 1965—1966 ուսումնական տարում կուսակցական լուսավորության ցանցի պրոպագանդիստների միայն 60 տոկոսն ուներ բարձրագույն կրթություն, մինչդեռ այժմ այդ թիվը հասնում է գրեթե 100 տոկոսի, ընդ որում, 1 6 պրոպագանդիստներ գիտության թեկնածուներ են կամ դոցենտներ։



Առաջնորդվելով ղեկավար կադրերին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին քաղաքական-գաղափարական աշխատանքում լայնորեն ներգրավելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումով, Կիրովականի քաղկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները, հիմնարկ-ձեռնարկությունների, ուսումնական հաստատությունների բոլոր ղեկավարներին, ինչպես նաև առաջատար մասնագետների զգալի մասի ընդգրկել են պրոպագանդիստական գործունեության մեջ։ Ընդ որում, այսպիսի կարգ է սահմանվել. կոմունիստին որևէ տեղամասում ղեկավար աշխատանքի հաստատելիս՝ քաղկոմի բյուրոն անպայմանորեն նկատի է ունենում նրա քաղաքական պատրաստականությունը և այն հանգամանքը, թե նա կարո՞ղ է, արդյոք, լինել նաև կոլեկտիվի դաստիարակ։ Ղեկավար կադրերին պրոպագանդիստական աշխատանքում ընդգրկելը մեծ չափով նպաստում է պարապմունքների գաղափարական մակարդակի բարձրացմանը, ունկնդիրների առջև ծառացած խնդիրների հետ ուսումնասիրվող թեմաների շաղկապմանը։ Չէ՛ որ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներն ունեն հարուստ ինֆորմացիա իրենց գլխավորած օբյեկտի վերաբերյալ, ավելի լավ գիտեն կոլեկտիվին, ծանոթ են նրան հետաքրքրող ու հուզող հարցերին, կարող են տեսական նյութը սերտորեն առնչել պրակտիկ խնդիրների հետ։ Միանգամայն օրինաչափ է, որ կարճ ժամանակում նրանցից շատերը դարձան լավագույն պրոպագանդիստներ և այժմ մեծ հեղինակություն են վայելում ունկնդիրների շրջանում։ Արդյունավետ են անցկացնում տեսական սեմինարների ու քաղդպրոցների պարապմունքները հատկապես քիմիական, ավտոգենային մեքենաշինության, ճշգրիտ հաստոցների գործարանների դիրեկտորներ Մ. Թումանյանը, Հ. Ղամբարյանը, Է. Գրիգորյանը, լուսատեխնիկական գործարանի գլխավոր ինժեներ Կ. Հազրոյանը, № 17 դպրոցի դիրեկտոր Ա. Ենոքյանը, № 5 դպրոցի ուսումնադաստիարակչական աշխատանքի գծով դիրեկտորի տեղակալ Բուրաստան Առաքելյանը և շատ ուրիշներ։

Պրոպագանդիստական կադրերի ընտրությունը, սակայն, միայն գործի սկիզբն է։ Անհրաժեշտ է կատարելագործել նրանց հետ տարվող աշխատանքը, նպաստել նրանց քաղաքական մակարդակի և մեթոդական վարպետության բարձրացմանը։ Այդ նպատակով մենք կիրառում ենք բազմազան ձևեր ու մեթոդներ։ Քաղկոմին կից գործում են պրոպագանդիստների մշտական սեմինարներ։ Դրանց պարապմունքները հրավիրվում են երկու ամիսը մեկ։ Այստեղ պրոպագանդիստների համար կարդացվում են գաղափարապես հագեցված դասախոսություններ՝ ուսումնասիրվող թեմաների հիմնական հարցերի վերաբերյալ, ինչպես նաև մեթոդական խորհուրդներ են տրվում նրանց։

Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը կազմակերպվում է շերտավորված, հաշվի է առնվում նրանց քաղաքական-տեսական պատրաստականությունը։ Պրակտիկան վկայում է, որ, տեսական օգնությունից զատ, նրանք զգում են մեթոդական օգնության կարիք։ Այդ առումով դրական արդյունք է տալիս բաց պարապմունքների կազմակերպումը։ Դրա էությունն այն է, որ քաղաքի մեկ կազմակերպության տվյալ պրոֆիլի խմբակների պրոպագանդիստներն ունկնդրում են մեկ ուրիշ կազմակերպությունում այդ նույն պրոֆիլի խմբակների պարապմունքները։ Այնուհետև հրավիրվում է սեմինար-խորհրդակցություն, և մանրամասն վերլուծվում են պարապմունքները։ Միայն այս տարվա հունվարին ու փետրվարին 200 պրոպագանդիստներ ունկնդրել են պարապմունքներ և մասնակցել սեմինար-խորհրդակցություններին։ Պարտադիր կերպով բոլոր պրոպագանդիստներն ինֆորմացիա են ուղարկում քաղկոմ՝ իրենց լսած պարապմունքի արդյունքի վերաբերյալ։ Քաղկոմի պրոպագանդայի բաժինը, կադրերի քաղաքական և տնտեսագիտական ուսուցման քաղաքային խորհրդի անդամների հետ միասին, ուսումնասիրում ու վերլուծում է ստացված ինֆորմացիաները, հանձնարարականներ մշակում և տալիս պրոպագանդիստներին հերթական սեմինար պարապմունքից առաջ։ Այս ուսումնական տարում քաղկոմ են ներկայացվել նման ինֆորմացիաներ տեսական սեմինարների և քաղդպրոցների 400 պարապմունքների վերաբերյալ։ Պարապ-

գրողականությունը։ Պրոպագանդիստ Յու. Մելիքսեթյանն այդ գործում կոնկրետ օգնություն ցույց տվեց նրանց։ Վեց ամիս անց նույն ունկնդիրները սեմինարում ինֆորմացիա տվեցին, որ գիտատեխնիկական նորամուծությունների իրականացմամբ հանքերից երեքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 15 տոկոսով։

Ինչպես ագիտացիոն, նույնպես և պրոպագանդիստական աշխատանքում հսկայական կարևորություն ունեն ցուցադրական նյութերը։ Դրանք օգնում են ունկնդիրներին՝ խորությամբ ընկալելու նյութը։ Ցուցադրական միջոցներից օգտվում են նաև մեր պրոպագանդիստները։ ՍՄԿԿ XXV համագումարի նյութերն ուսումնասիրելիս՝ նրանք պարապմունքները զուգակցում են ֆիլմերի ցուցադրմամբ։ Ունկնդիրները մեծ հետաքրքրությամբ են դիտում «ՍՄԿԿ XXV համագումարը», «Մենք կառուցում ենք ԲԱՄ-ը», «Աշխատանքի գիտական կազմակերպումը», «Պատմվածք կոմունիստի մասին» կինոնկարները։

Քաղաքի բոլոր ուսումնական հաստատություններում գործող տեսական սեմինարներում ունկնդիրներն ուսումնասիրում են ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը վերաբերող հարցեր։ Նրանք հանդես են գալիս ռեֆերատներով։ Ուսուցումը մեծ չափով օգնում է դասախոսներին, ուսուցիչներին՝ լուծելու մատաղ սերնդի, ուսանողության կոմունիստական դաստիարակության հրատապ շատ հարցեր։

Ինչպես ամեն մի բնագավառում, գաղափարական աշխատանքում ևս մեծ է խրախուսանքի դերը։ Քաղկոմը լուրջ ուշադրություն է նվիրում պրոպագանդիստների խրախուսմանը։ Չէ՛ որ բարոյական աջակցությունն անհրաժեշտ է նաև նրանց։ Քաղկոմի քաղլուսկաբինետում ստեղծվել է «Լավագույն պրոպագանդիստը» պատվո տախտակ, որտեղ ամեն տարի փակցվում են առաջավոր պրոպագանդիստների լուսանկարները։ Ուսումնական տարվա ավարտից հետո առաջավոր 10 պրոպագանդիստների տրվում է քաղսովետի գործկոմի պատվոգիր։ Լավագույն պրոպագանդիստներին խրախուսում են նաև տեղերում, սկզբնական կուսկազմակերպություններում։

Իրենց աշխատանքում հաջողության հասնելով՝ ունկնդիրները երախտագիտությամբ նշում են տեսական սեմինարի օգտակարությունը և սիրով են արտահայտվում պրոպագանդիստների մասին։ Սակայն քաղաքի ոչ բոլոր կուսկազմակերպություններում է, որ պրոպագանդիստները դարձել են քաղաքական և տնտեսագիտական ուսուցման կենտրոնական դեմք։ Դա բացատրվում է նրանով, որ վերջին տարիներին ընդլայնվեցին ուսուցման շրջանակները, մի քանի անգամ աճեց խմբակների թիվը, իսկ պրոպագանդիստական կադրերի պատրաստումը ետ մնաց։ Հետևանքը եղավ այն, որ պրոպագանդիստական աշխատանքում ներգրավվեցին նաև այնպիսի ընկերներ, որոնք դեռևս անհրաժեշտ փորձ և մեթոդական վարպետություն չունեին։

Քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները շերտավորված աշխատանք են տանում այդ պրոպագանդիստների հետ։ Կարելի է հուսալ, որ որոշ ժամանակ անց նրանցից շատերը կհամալրեն լավագույնների շարքերը։

Անցած տարի համամիութենական սոցմրցության մեջ բարձր արդյունքների հասավ նաև Կիրովականը, որն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Անշուշտ, այդ կարևոր նվաճման մեջ իրենց ավանդն ունեն նաև մեր պրոպագանդիստները։ Կուսքաղկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց պարտքն են համարում՝ մշտապես օգնել պրոպագանդիստներին, կատարելագործել նրանց հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Քաղկոմը որոշել է առաջիկա երկու տարում հասնել այն բանին, որ բոլոր պրոպագանդիստները, երկրի առաջավոր պրոպագանդիստների օրինակով, ունենան անհատական ստեղծագործական պլաններ ողջ ուսումնական տարվա համար։ Դա շատ կօգնի պրոպագանդիստներին՝ պարապմունքներն անցկացնելու արդյունավետ, մոբիլիզացնելու ունկնդիրներին տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

# ԸՆՏԱՆԻՔԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ

Վ. Ա. ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ
Հայկական ՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր, պրոֆ.
Երևանի պետական բժշկական ինստիտուտի ռեկտոր

Մարդու հոգեկան հարստությունը նրա մտքերի հարստությունն է, զգացմունքների խորությունն ու համոզմունքների ուժը։ Եվ այդ հոգեկան հարստությունն ավելի ու ավելի է դառնում առաջավոր սովետական մարդու՝ կոմունիստական հասարակարգ կառուցողի, լիակատար սեփականությունը։ Սովետական մարդն ունի լայն մտահորիզոն, կոմունիստական հաստատուն համոզմունքներ և զգացմունքների բարձր կուլտուրա։ Կոմունիստական հասարակարգի մարդը ձևավորվում է այսօր։ Նրա առջև բացվում են գիտության ու տեխնիկայի լայն հորիզոններ։ Սակայն գիտելիքների նշանակությունը չի սահմանափակվում սոսկ նրանով, որ հնարավորություն է տալիս զբաղվելու մի որոշակի աշխատանքային գործունեությամբ։ Գիտելիքները լուսաբանում են աշխարհի ընդհանուր պատկերը, բնության և հասարակության զարգացման ընդհանուր օրենքները, որի շնորհիվ մշակվում է երևույթների ընկալման գիտական մոտեցում, ձևավորվում կոմունիստական աշխարհայացք։

Երեխայի՝ ապագա կոմունիստական հասարակարգ կառուցողի, հոգեկան զարգացման հիմքերը դրվում են ընտանիքում։ Ամենավաղ հասակից են երեխաների մեջ ստեղծվում պատկերացումները բնության, մարդկանց փոխհարաբերությունների, շրջապատող աշխարհի մասին։

Ծնողները, նրանց վարքագիծը, երեխաների հետ ունեցած նրանց փոխհարաբերություններն են պայմանավորում երեխաների պատկերացումների հարստությունը, նրանց արագ զարգացումը։ Երեխայի հոգեկան կերպարն ստեղծվում է ծնողների հոգեկան առաջձի ազդեցությամբ. ահա այս չափազանց կարևոր խնդրին եմ ուզում անդրադառնալ ներկա հոդվածում։

Յուրաքանչյուր երեխա իրավունք ունի երջանիկ մանկության, և դրա հիմքը երեխայի կյանքի առաջին իսկ օրերից դնում են ծնողները։

Երեխա մեծացնելն իսկական արվեստ է, որը պետք է կատարելագործել ամբողջ կյանքում։ Սխալվում են այն մարդիկ, ովքեր կարծում են, թե բավական է տանն ստեղծել հիանալի կենցաղային պայմաններ, ապրել լիության մեջ, և միջավայրը ինքնիրեն (ընտանիքը, մանկապարտեզը, դպրոցը և այլն), «մեխանիկորեն» կապահովի երեխայի հետագա դաստիարակությունը։ Ուրիշները, հակառակը, այնքան եռանդ են գործադրում խիստ լինելու, որ նրանց երեխաները մեծանում են ինքնամփոփ և վատ նախապատրաստված՝ ժամանակի բարոյական պրոբլեմները ճիշտ լուծելու։ Իհարկե, միամտություն է մտածել, թե երեխայի անհատականության ձևավորումն ամբողջովին պայմանավորված է սոսկ ծնողների կամքով, սակայն և դժվար է գերագնահատել ծնողների դերը։

Մեծերի անմիջական ներգործությամբ է, որ հայտնվում է երեխայի առաջին ժպիտը, սկսվում է նրա առաջին ծանոթությունն առարկաների հետ, բացվում է լեզուն և այլն։ Այդ գործունեության ընթացքում և մեծերի անմիջական ազդեցությամբ կազմավորվում են երեխայի շատ պատկերացումներ, տարրական հասկացողություններ, երեխան ձեռք է բերում շատ հմտություններ և գիտելիքներ շրջապատող իրերի ու երևույթների մասին, սկսում է կայունանալ նրա կողմնորոշումը շրջապատում, ձևավորվում են մեծերի ու երեխաների տարբեր փոխհարաբերությունները, դրվում են մանկան բարոյական վարքագծի, անհատականության զարգացման հիմքերը։ Երեխաները վաղ հասակից են ունե-

# ՄԱՐԴԻԿ և ՏԱՐԻՆԵՐ

## ԽՈՍՔ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹՅԱՆ

Արտաշես Կարինյանը լենինյան գվարդիայի այն երևելի գործիչներից է, որն իր ողջ գիտակցական կյանքը նվիրաբերել է կոմունիստական հասարակարգի կերտման հեղափոխական պայքարին: Իր բազմաբեղուն գործունեությամբ ու սուր գրչով մշտապես սատարել է սոցիալիզմի կառուցման վեհ գործին:

Հիրավի, յոթ տասնամյակ լինելով ՍՄԿԿ անդամ, ակադեմիկոս Ա. Կարինյանն իր բարձր գաղափարայնությամբ, սկզբունքայնությամբ, կուսակցության բազում և հույժ պատասխանատու հանձնարարությունների անբասիր կատարմամբ, կրքոտ կուսակցականության ու սթափ գիտականության դիրքերից անզիջում մաքառելով բուրժուական գաղափարախոսության դեմ՝ վաղուց ի վեր արժանացել է հարազատ կուսակցության և սովետական կառավարության բարձրարժան վստահությանը:



Հանրապետության աշխատավորները վերջերս պատշաճ գոհունակությամբ և հանդիսավորությամբ նշեցին թանկագին ընկերոջ, հեղափոխության վետերանի ծննդյան 90-ամյակը: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը նրան շնորհեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում, հանձնելով Լենինի շքանշան և «Մուրճ ու մանգաղ» ոսկե մեդալ: Մինչ այդ նա պարգևատրվել էր Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով, մեդալներով ու պատվոգրերով:

Ա. Կարինյանի երկարամյա կյանքի ուղին անձնվեր լենինյանի խիստ ուսանելի տարեգրությունն է, որը նոր սերնդին մարքսիզմ-լենինիզմի ոգով համակելու վառ ու կենդանի օրինակ է: Այո՛, գրականագետ, արվեստաբան, հրապարակախոս Կարինյանի ավանդն իր արժանի տեղն ունի նոր աշխարհի հոգևոր կուլտուրայի հարուստ անդաստանում:

Չնայած իր պատկառելի տարիքին, Ստ. Շահումյանի անմիջական զինակից Ա. Կարինյանն աշխատում է մեծ ջանասիրությամբ, ակտիվ հետևում երկրի հասարակական, քաղաքական կուլտուրական կյանքին, նախանձելի մղումով հետևում տպագիր խոսքի նորույթներին:

Մեր ավագ ընկերոջն ի սրտե շնորհավորում ենք կառավարական բարձր պարգևի՝ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման արժանանալու առթիվ և մաղթում ստեղծագործական նորանոր հասումներ, քաջառողջություն, երկար տարիների կյանք:

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ



## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ՋԱՏԱԳՈՎԸ

Արտաշես Բալասիի Կարինյանի ծննդյան 90-ամյակի առթիվ հրապարակվել է նրա գրական-քննադատական, գրական-հրապարակախոսական ակնարկների ծավալուն ժողովածուն*: Ժողովածուի հարուստ նյութագանկում զետեղված են հեղինակի 1914—1973 թվականներին գրած մի շարք երկեր, որոնց պատշաճ լուսաբանման ու գնահատման համար անհրաժեշտ կլիներ, ամենից առաջ, խորամուխ լինել հասարակական-քաղաքական, ինչպես և գրական կյանքի այն մեծ իրադարձություններում, որի հարազատ ծնունդն է Կարինյան-ստեղծագործողը:

Արտաշես Կարինյանը հայ մարքսիստ քննադատ-հրապարակախոս գործիչների սերնդից է, Ստեփան Շահումյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի փայլուն սերնդից, որոնց համար գեղարվեստական գրականությունը անգնահատելի ազդակ էր, գաղափարական պայքարի, սոցիալիստական հասարակության կառուցման հզոր զենք:

Տակավին աշակերտական տարիներին դրսևորվում են Կարինյանի բնորոշ գծերը՝ հակումը քաղաքական-հեղափոխական կյանքի, սերը՝ գեղարվեստական գրականության հանդեպ: Ռուսական առաջին հեղափոխության տարիներին, աշակերտական հեղափոխական ընդհատակյա կազմակերպության հավաքներին նա կարդում է ռեֆերատներ հայ և ռուս առաջավոր գրողների՝ Խաչատուր Աբովյանի, Անտոն Չեխովի, Գլեբ Ուսպենսկու մասին: 1905-ին, ընդհատակում, Բրուտ ծածկանունով, տպագրվեց Կարինյանի *Գրականություն և կյանք* քննադատական առաջին գրքույկը՝ նվիրված Մաքսիմ Գորկու *Հովեկներ* պատերազմությանը: Իսկ 1906-ին 20-ամյա երիտասարդի կենսագրությունը նշանավորվում է նոր իրադարձությամբ— «Կայծ» սոցիալ-դեմոկրատական հայերեն առաջին լեգալ լրագրում, Լևոն Բրուտյան ծածկանունով, տպագրվում է նրա *Բաքվի նորագույն անարխիստների մասին* հրապարակախոսական հոդվածը: 1906—1910 թվականներին Կարինյանը սովորում է Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետում, ընդունվում կոմունիստական կուսակցության շարքերը (1907), 1911-ին նա արդեն «Նոր խոսք» գրական-հասարակական ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ էր: Գրական-հասարակական գործունեությանը զուգընթաց նա ակտիվ մասնակցում է հեղափոխական պրակտիկ աշխատանքներին, որի համար և 1913-ին արտաքսվում է Բաքվից: 1917-ին, փետրվարյան հեղափոխությունից հետո, կրկին վերադառնում է Բաքու, աշխատում իբրև «Բանվորների և զինվորների դեպուտատների Բաքվի սովետի տեղեկագրի» գլխավոր խմբագիր, 1918-ի ապրիլից՝ Ստեփան Շահումյանի գլխավորած Բաքվի նորաստեղծ ժողկոմսովետի արդարադատության կոմիսարն է Բաքվի կոմունայի ակտիվ գործիչը:

Բաքվի կոմունայի անկումից հետո Արտաշես Կարինյանը տեղափոխվում է Մոսկվա, աշխատում Ազգությունների ժողովրդական կոմիսարիատին կից հայկական գործերի կոմիսարիատում, որպես գրական-հրատարակչական բաժնի վարիչ, «Կոմունիստ», «Կարմիր դրոշակ» (Մոսկվա) հայերեն թերթերի խմբագիր:

Ստեփան Շահումյան, Ալյոշա Ջափարիձե, Սուրեն Սպանդարյան, Ալեքսանդր Մյասնիկյան, Սերգո Օրջոնիկիձե— պրոֆեսիոնալ հեղափոխականների մի ամբողջ սերունդ, որոնց հետ գործակցում էր Արտաշես Կարինյանը: Նրան բախտ է վիճակվել նաև տեսնել, լսել հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինին:

Բաքվում, Պետրոգրադում, Մոսկվայում հեղափոխական իրադարձությունների, գրական շարժման մեծ հորձանուտում էլ ձևավորվում են Կարինյանի քաղաքական, գրական-գեղագիտական հայացքները: 1906—1920 թթ. տպագրվում են նրա տեսական, սկզբունքային մի շարք հոդվածներ, տեսություններ, գրախոսություններ՝ «Պրավդա»-ում, սոցիալ-դեմոկրատական մամուլի էջերում, առանձին գրքույկներով:

Այդ ժամանակաշրջանում են տպագրվում Կարինյանի հոդվածներն ու գրախոսությունները Մ. Գորկու, Հ. Հակոբյանի, Ծ. Կուրղինյանի, Ալ. Շիրվանզադեի, Վ. Տերյանի, Սիամանթոյի, Վա-րուժանի մասին (*Գյուղացին ռուսահայ գրականության մեջ, Գծեր արևմտահայ գրականությունից, Քաղաքի երգիչները, Ռեալիզմի վերածնունդը, Մաքսիմ Գորկու «Հեքիաթները», Պրոլետարական գրողների ժողովածուի մասին*, «Հին» և «նոր» գեղարվեստը»):

«Գրական գործը,— դեռևս ռուսական առաջին հեղափոխության օրերին ազդարարում էր Լենինը,— պետք է դառնա համապրոլետարական գործի *մի մասը*...» (Երկեր, հ. 10, 4-րդ հրատ., էջ 40): Հեղափոխական կուսակցությունների ղեկավարներին առաջնորդն այնուհետև հիշեցնելով

---

* *Ա. Բ. Կարինյան.* Ժողովուրդների եղբայրության դրոշի ներքո *(564 էջ): Հայկ. ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1976:*

# ՄԱՐՏԱԿԱՆ ՓԱՌՔԻ ՃԱՄՓԱՆԵՐՈՎ

Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի տոնակատարության հանդիսավոր նիստում արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը բարձր գնահատական տվեց սովետական զինված ուժերի շարքերում աճած, իրենց զորավարական տաղանդով աչքի ընկած հայազգի ականավոր զորահրամանատարներին:

«Սովետական մարդիկ,— ասաց նա,— մեծ հարգանքով են տալիս պանծալի զորապետներ, զորքերի և մեր զինված ուժերի մարտական գործողությունների կազմակերպիչներ, քաղաքացիական կռիվների հերոս Գայի (Բժշկյանց), Սովետական Միության մարշալ Բաղրամյանի, Սովետական Միության նավատորմի ադմիրալ Իսակովի, ավիացիայի մարշալ Խուդյակովի, զրահատանկային զորքերի մարշալ Բաբաջանյանի և հայ ժողովրդի զավակ՝ մյուս տաղանդավոր զորավարների անունները»:



Ռազմական արվեստին տիրապետելու սերը Հ. Բաբաջանյանի մեջ արթնացել է դեռևս պատանեկան տարիներին: 1925 թվականին իրականանում է նրա փափագը. տասնիննամյա Համազասպը հագնում է զորականի համազգեստ: Սկզբում սովորում է Երևանի ռազմական դըպրոցում, ապա փոխադրվում Անդրկովկասյան զինվորական հետևակային ուսումնարան (Թիֆլիս): Ջանասեր երիտասարդը մեծ եռանդով յուրացնում է ավանդվող գիտելիքները: Ռազմական ուսումնարանն ավարտելուց հետո Հ. Բաբաջանյանը նշանակվում է Կովկասյան 4-րդ գնդում դասակի հրամանատար: Նրա դասակն աչքի է ընկնում մարտական ու քաղաքական պատրաստությամբ, դառնում զորամասի առաջավոր ստորաբաժանումներից մեկը: Շատ չանցած՝ Բաբաջանյանը նշանակվում է վաշտի, ապա՝ գումարտակի հրամանատար: Այսպես սկիզբ է առնում նրա զինվորական տարեգրությունը: 1937 թվականին Ֆրունզեի անվան ակադեմիան ավարտելով՝ նա նշանակվում է կորպուսի շտաբի օպերատիվ բաժնի պետի տեղակալ:

Առաջին մարտական մկրտությունը Հ. Բաբաջանյանն ստանում է սպիտակ ֆինների դեմ մղված կռիվներում և ցուցաբերած քաջության ու խիզախության համար արժանանում ՍՍՀՄ պաշտպանության ժողովրդական կոմիսարի խրախուսանքին:

Շտաբում աշխատելը, սակայն, չի հրապուրում Բաբաջանյանին: Իր խնդրանքով գալիս է Կովկաս և նշանակվում այստեղ տեղակայված գնդերից մեկի հրամանատար: Ընդունելով զորամասը, նա եռանդուն աշխատանք է կազմակերպում դասակներում ու վաշտերում, ռազմիկների շրջանում: Գնդի հրամանատարի, զորամասի կուսակցական կազմակերպության և քաղաշխատողների գործադրած ջանքերն ապարդյուն չեն անցնում: Հերթական տեսչական



ստուգումների ժամանակ գունդը բարձր գնահատականի է արժանանում...

Շուտով Բաբաջանյանը փոխադրվում է 19-րդ բանակի (հրամանատար՝ գեներալ Ի. Ս. Կոնև) շտաբը, նշանակվում օպերատիվ բաժնի պետի տեղակալ: Այդ օրերին էլ Կոնևի բանակը շարժվում է դեպի ՍՍՀՄ արևմտյան սահմանները...

...Սկսվում է Հայրենական մեծ պատերազմը: Ինչպես ողջ սովետական զինված ուժերը, 19-րդ բանակի զորագնդերը ևս արյունահեղ կռիվներ են մղում հիտլերյան զավթիչների դեմ: Այդ ահեղ օրերին Բաբաջանյանն անձկում էր լինել ռազմաճակատի առաջավոր դիրքերում, այն ստորաբաժանումներում, որոնք կատաղի կռիվներ էին մղում հիտլերյան զավթիչների դեմ, այն ռազմիկների կողքին, որոնք կրակի ու բոցերի մեջ իրենց քաջությամբ փակում էին առաջ սողացող ֆաշիստների ճանապարհը:

Մի անգամ, օգտվելով հարմար առիթից, Բաբաջանյանը մոտենում է բանակի հրամանատարին և խնդրում՝ իրեն ուղարկել զորամաս...

— Չլինի՞ թե մեկն ու մեկի հետ գժտվել եք, — հարցնում է գեներալը:

— Ո՛չ, ամեն ինչ կարգին է,— պատասխանում է Բաբաջանյանը:

— Շատ լավ, կգնաք 127-րդ դիվիզիա՝ որպես գնդի հրամանատար... Եթե զոհվեք կռվի դաշտում, այդ քաջի մահ կլինի... Եթե ողջ մնաք՝ հերոս կլինեք... Լավ է երկրորդը,— ավարտում է զրույցը Կոնևը:

Գեներալի համաձայնությունից հետո բանակի ռազմական խորհրդի անդամ Շեկլանովը կատակում է.

— Դասալքում են դեպի առաջին գիծը...

Գեներալի թույլտվությունն ստանալուց հետո Բաբաջանյանն ընկերոջ՝ Պ. Ֆիալկի հետ բռնում է զորամիավորում տանող ճանապարհը... Արկերի ու ականների որոտի տակ նրանք հետիոտն անցնում են ամբողջ ճանապարհը և վերջալույսին հասնում դիվիզիայի շտաբ: Նրան նշանակում են 395-րդ գնդի հրամանատար:

Այդ 1941 թվականի աշնանամուտին էր: Արյունահեղ կռիվներ էին ընթանում Սմոլենսկի ուղղությամբ: Սովետական բանակը ուժեր էր կենտրոնացնում այստեղ՝ թշնամուն հակահարված տալու, դեպի Մոսկվա շարժվող ֆաշիստների ճանապարհը փակելու համար: 395-րդ գունդը ժամանակավորապես ամրացվում է 102-րդ տանկային դիվիզիային: Զորամիավորումից բաժանվելիս դիվիզիայի հրամանատար Ա. Ակիմենկոն Բաբաջանյանին պատվիրում է.

— Վերադարձեք միայն փառքով, այլապես ձեզ չենք ընդունի...

Դիվիզիայի հրամանատարը նախազգում էր, որ այդպես էլ կլինի: Նա կռահում էր, քանի որ իր զորամիավորման կազմում Բաբաջանյանի հրամանատարությամբ գործող զորագունդն արդեն ցույց էր տվել իր քաջությունն ու խիզախությունը:

Սմոլենսկի ճակատամարտը կարևոր տեղ է գրավում մեծ Հայրենականի սկզբնական շրջանի պատմության մեջ: Այստեղ կարմիր բանակի զորամասերը, համառ դիմադրությունից հետո, առաջին անգամ առանձին հատվածներում ուժգին հակահարված տվին հակառակորդին և զգալիորեն հյուծեցին թշնամու հարվածային խմբավորումը:

Ելնյայի ուղղությամբ գործող գնդերը, նրանց թվում և Բաբաջանյանի զորամասը, սաստկացնելով հարձակումը, մեծ կորուստ են պատճառում հակառակորդին, ազատագրում քաղաքն ու բազմաթիվ ուրիշ բնակավայրեր: Թշնամու դեմ մղված կռիվներում քաջություն, խիզախություն և կազմակերպվածություն ցուցաբերելու համար, սովետական զինված ուժերի պատմության մեջ առաջին անգամ, մի շարք զորամիավորումների թվում, գվարդիայի կոչում է շնորհվում նաև 127-րդ դիվիզիային: Այդ լուրը խանդավառությամբ է համակում նաև 395-րդ գնդի ռազմիկներին, որոնք երդվում են ավելի ուժգին հարվածել ֆաշիստներին, փակել դեպի Մոսկվա նրանց ճանապարհը: (Հետագայում, ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակի 25-ամյակի տոնակատարության օրերին, ելնյացիները Բաբաջանյանին ընտրում են իրենց քաղաքի պատվավոր քաղաքացի): Սմոլենսկից հետո Բաբաջանյանի զորամասը մարտնչում է Դոնի-Ռոստովի մատույցներում, ապա՝ արևմտյան ռազմաճակատում: Աներեր ու քաջ հրամանատարը միշտ հայտնվում է այնտեղ, ուր թեժ մարտեր են տեղի ունենում: Նրա բոցաշունչ խոսքն ու անձնական քաջությունը մարտիկներին ոգեկոչում են՝ արիաբար պաշտպանելու հայրենի հողի յուրաքանչյուր թիզը:

Ֆաշիստական զավթիչների դեմ մղված հերոսամարտերում Հ. Բաբաջանյանը օր-օրի դրսևորում է իր հրամանատարական ձիրքը, մեծ մասշտաբների մարտական գործողություններ վարելու հմտությունն ու կազմակերպական տաղանդը: Հաշվի առնելով այդ, վերադաս հրամանատարությունը 1942 թ. գարնանը նրան նշանակում է 3-րդ մեքենայացված բրիգադի հրամանատար:

1942 թվականի աշնանը Հ. Բաբաջանյանի բրիգադը արևմտյան ռազմաճակատի 22-րդ բանակի կազմում էր: Այլ զորամասերի թվում նրա բրիգադը ևս առաջադրանք է ստանում՝ ամեն գնով ճեղքել հակառակորդի պաշտպանության գիծը Ռժև—Վելիկիե Լուկի հատվածում: Մարտական առաջադրանքը հաջողությամբ է կա-

տարվում: Սովետական զորամասերը ճեղքում են հակառակորդի պաշտպանական դիրքերը և մի քանի օրվա ընթացքում 40 կիլոմետր խորանում թշնամու թիկունքը, մեծ կորուստներ պատճառելով նրան:

Կուրսկի ճակատամարտը, ինչպես նշել է Կ. Կ. Ռոկոսովսկին, տեխնիկայի հագեցվածությամբ և զորքերի գործողության ինտենսիվությամբ իր հավասարը չի ունեցել պատերազմների պատմության մեջ[1]: Այդ ճակատամարտի՝ Բելգորոդի ուղղությամբ էր գործում Բաբաջանյանի բրիգադը: Գրեթե 50 օր ու գիշեր չէին դադարում հրանոթների ու ականանետների որոտը, ռումբերի ու արկերի հուժկու պայթյունները, տանկերի ու ինքնաթիռների մոտորների դղրդյունը:

«...Հառաչում էր հողը, գրում է իր հուշերում Հ. Բաբաջանյանը, ճակատամարտի մասշտաբը գերազանցում էր մարդկանց երևակայությունը: Հարյուրավոր տանկեր, թնդանոթներ վերածվում էին մետաղյա ջարդվածքների լեռնակույտերի: Խավարել էր արևը, նրա սկավառակը հազիվ էր երևում արկերի ու ռումբերի պայթյունից առաջացած ծխի ու փոշու մշուշի միջից...»[2]:

Ռումբի պայթյունից Բաբաջանյանը վիրավորվում է ոտքից: Կորպուսի հրամանատարն ու քաղբաժնի պետը նրան «բռնությամբ» են ուղարկում հոսպիտալ: Պալատում վիրավորի աչքերը չեն փակվում. խիզախ հրամանատարը հոգով ու մտքով զինվորների հետ է, նրանց կողքին, կրակի ու բոցերի մեջ: Մի քանի օր «բուժվելուց» հետո նա իր հանձնակատարի հետ գաղտնի մեկնում է ռազմաճակատ, իր բրիգադը: Նա նորից դիտակետում է և անմիջականորեն ղեկավարում է իր ենթակա ստորաբաժանումների մարտական գործողությունը, ստորաբաժանումներ, որոնք սրընթաց հետապնդում են ճողոպրող թշնամուն:

Քաջարի հրամանատարը միշտ զգայուն և ուշադիր է եղել իր ենթակաների նկատմամբ, մտահոգվել՝ քիչ զոհերով մեծ հաղթանակներ ձեռք բերելու համար: Մարտական ամենածանր գործողությունների ժամանակ անգամ նա երբեք չի մոռացել հոգալ ռազմիկների սննդի, ստորաբաժանումների ռազմապաշարի մասին: Ենթականերն էլ անսահման սիրում էին իրենց անձնվեր հրամանատարին: Բաբաջանյանի զինակիցներից, մարտական ընկերներից շատերը մերթ նրան դիմում էին ո՛չ թե ազգանունով ու զինվորական կոչումով, այլ՝ անունով:

[1] Տե՛ս История коммунистической партии Советского Союза, т. 5, книга 1-ая, стр. 354, Политиздат, М., 1970.

[2] Տե՛ս А. Бабаджанян, Дороги победы, М., «Молодая гвария», стр. 99, 1975 г.



Հ. Բաբաջանյանի հրամանատարությանը ենթակա զորամասերը 1943—44 թթ. ձմռանն ակտիվորեն մասնակցում են Արևմտյան Ուկրաինայի ազատագրման համար մղված կռիվներին: Ականավոր զորավար, Սովետական Միության մարշալ Գ. Ժուկովը, իր հուշագրությունում անդրադառնալով Դնեստրի վերին հոսանքի ափերին տեղի ունեցած մարտերին, ըստ արժանվույն է դրվատում Զալեշչիկիի շրջանում Հ. Խ. Բաբաջանյանի հրամանատարությամբ գործող 20-րդ մեքենայացված գվարդիական բրիգադի ռազմիկների սխրանքը[1]:

Զալեշչիկին արդեն ազատագրված է: Ս. Ուստիմենկոյի հետախույզները, չսպասելով քաղաքում մարտերի ավարտմանը, խուճապի են մատնում թշնամուն և սրընթաց անցնում Դնեստրն ու նրա արևմտյան ափին պլացդարմ գրավում:

Պատերազմական գործողությունների ընթացքում, երբ իրադրությունը պահանջում էր, Բաբաջանյանն անմիջապես վերադասավորում էր իր զորամասերը, ստեղծում արագ շարժունակ խումբ, ապա, ընտրելով թշնամուն հարվածելու գլխավոր ուղղությունը, հանկարծակի հարձակումով, սրընթաց գրոհով շրջանցում թշնամուն, փակում նրա նահանջի ճանապարհը: Այդպիսի փայլուն օպերացիաներից էին Զալեշչիկի և Կապիչինցի քաղաքների ազատագրման համար մղված կռիվները: 20-րդ մեքենայացված բրիգադի տանկերի գրոհն այնքան հանկարծակի և հուժկու էր, որ երբ սովետական մարտական մեքենաները սլանում են Կապիչինցիի փողոցներով, երթևեկություն կարգավորող գերմանացի զինվորները, ոչինչ չկռահելով, ճանապարհ էին ցույց տալիս մեր տանկիստներին:

Երրորդ մեքենայացված կորպուսի հրամանատար գեներալ Ի. Դրեմովը Հ. Բաբաջանյանի պարգևատրման թերթիկում գրում է.

...1944 թվականի մարտի 21-ից մինչև ապրիլի 1-ը Ստանիսլավի ուղղությամբ ֆաշիստական զավթիչների դեմ մղված կռիվներում Հ. Բաբաջանյանը, որպես բրիգադի հրամանատար, աչքի ընկավ իր համարձակությամբ, վճռականությամբ, հմտությամբ: Բրիգադը, դրսևորելով սրընթաց շարժունակություն, շրջանցեց հակառակորդի թիկունքը և կտրեց նրա նահանջի ուղին:

Այդ մարտում բրիգադն ազատագրել է ավելի քան 60 քաղաք և բնակավայր, ռազմավար վերցրել մոտ 500 ավտոմեքենա, 9 տանկ և այլ մարտական տեխնիկա:

[1] Տե՛ս Г. К. Жуков, Воспоминания и размышления, изд., АПН, стр. 517, 1971.

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. ապրիլի 26-ի հրամանագրով գվարդիայի փոխգնդապետ Համազասպ Խաչատուրի Բաբաջանյանին շնորհվում է Սովետական Միության հերոսի կոչում՝ գերմանա՛կան զավթիչների դեմ մղվող պայքարում հրամանատարության առաջադրանքներն օրինակելիորեն կատարելու և մարտերում ցուցաբերած հերոսության ու խիզախության համար:

Քառասունչորսի ամռանը 20-րդ մեքենայացված գվարդիական բրիգադը, 1-ին գվարդիական տանկային բանակի կազմում, շարունակում է իր հարձակումը դեպի արևմուտք: Այն անցնում է Բուգ, Սան գետերը, հասնում Վիսլա ու Սանդամիրում պլացդարմ գրավում: Ամենուրեք ազատագրված քաղաքների ու գյուղերի աշխատավորները ցնծությամբ են դիմավորում իրենց ազատարարներին: Այրված շեներն ու ավերված քաղաքները մորմոքում են աննկուն զորապետի սիրտը, վրեժի կոչում ոսոխի դեմ: Նա իր մարտական մեքենայով հասնում է այնտեղ, ուր ահեղ կռիվներ են ընթանում և իր անձնական քաջությամբ ոգեշնչում ռազմիկներին: Օգոստոսի 19-ին տեղի ունեցած արյունալի մարտում Բաբաջանյանը կոկորդից ծանր վիրավորվում է: Նա անկարող է որևէ բառ արտասանել: Քաջարի հրամանատարը չի կորցնում իրեն, վերցնում է թուղթն ու մատիտը, գրավոր կարգադրություններ անում, հրամաններ տալիս ստորաբաժանումներին՝ շարունակել կռիվը: Մարտադաշտից նրան դուրս բերելու նպատակով տանկիստներն իրենց հրամանատարին տեղափոխում են մեքենայի խցիկը... Հակառակորդի արկի հարվածից հրկիզվում է տանկը: Խիզախ ռազմիկները գործադրում են բոլոր ջանքերը՝ ապահովելու հրամանատարի կյանքի անվտանգությունը:

...Նորից հոսպիտալ, որից նա այնպես խուսափում է, նորից վիրավորների շրջապատ... Բուժաշխատողների համար դժվար չէր տեսնել, որ Բաբաջանյանի կյանքը մազից է կախված: Գործի են դրվում բոլոր միջոցները՝ մահվան ճիրաններից փրկելու հերոսին:

Մահճակալին գամված Բաբաջանյանը կարոտով է վերհիշում հայրենի Չարդախլու գյուղի ծաղկափթիթ հանդերը, վճիտ աղբյուրների սառնորակ ջրերը... Մտաբերում է քսաներեք թվականը, երբ իրեն ընտրեցին հարյուր հիսուն անդամ ունեցող կոմերիտմիության բջջի քարտուղար, խանդավառ կոմերիտականներին, որոնք նավթի ճրագի աղոտ լույսի տակ գեղջուկ-գեղջկուհիներին գրագիտություն էին սովորեցնում և կուսկազմակերպությանն օգնում գյուղի սոցիալիստական վերափոխման պայքարում... հետո՝ քսանութ թվականը, երբ ոդեգրվեց կոմունիստական կուսակցությանը...

...Վիրաբույժ պրոֆեսոր Ախուտինի ոսկե ձեռքերով կարճ ժամանակում ապաքինվում է Բաբաջանյանը և նորից իր տեղը գրավում մարտակարգերում, այս անգամ արդեն՝ առաջին գվարդիական տանկային բանակի 11-րդ կորպուսի հրամանատար:

1945 թ. հունվարի կեսերին մեր զորքերը Բալթիկ ծովից մինչև Կարպատյան լեռները հուժկու հարձակվում են հիտլերյան բանակի վրա: Բաբաջանյանի կորպուսը Վիսլայի պլացդարմից (Վարշավայից հարավ) սրընթաց գրոհով մասնակցում է Լոձ, Պոզնան ու բազմաթիվ այլ քաղաքների, գյուղերի ազատագրմանը և դուրս գալիս Օդերի ափ: Նա զօր ու գիշեր անցկացնում է հրամանատարական կետում կամ դիտակետում, օպերատիվ ղեկավարում ենթակա զորամասերի մարտական գործողությունները:

Տրվում է նոր հարձակման հրաման, այս անգամ՝ Բեռլինի վրա: Տաղանդավոր զորապետի տանկիստները, համառորեն հաղթահարելով հակառակորդի բոլոր արգելքներն ու դիմադրությունը, մի քանի օրում հասնում են Բեռլին ու մասնակցում փողոցային կռիվներին: Անվախ հրամանատարը դիտակետը ընտրելով առաջին գծին շատ մոտ, օպերատիվ ղեկավարում է իր ենթակա զորամասերի մարտական գործողությունները: Նա հպարտանում է կոմունիստների ու կոմերիտականների կատարած սխրանքներով, որոնք իրենց մարտական մեքենաներով ավերում են ֆաշիստների ամրությունները, սլանում քաղաքի կենտրոնական թաղամասերը: Ապրիլի 30-ին 11-րդ կորպուսի տանկիստներն իրենց հրանոթներից ուղիղ նշանառությամբ անընդհատ արկեր են թափում քաղաքի կենտրոնում գտնվող կայսերական գրասենյակի վրա: Ժամը 2-ին հարևան զորամիավորման ռազմիկները հաղթանակի դրոշը բարձրացնում են Ռայխստագի վրա: Բեռլինի անկման մասին ՍՍՀՄ զինված ուժերի Գերագույն գլխավոր հրամանատարի հրամանում՝ գեներալներ Կուզնեցովի, Չույկովի, Չերնիչենկոյի, Խետագուրովի և ուրիշ զորահրամանատարների թվում հիշատակված են նաև Համազասպ Բաբաջանյանի, Նվեր Սաֆարյանի, Իսահակ Գասպարյանի, Սերգեյ Կարապետյանի անունները, որոնց զորքերն ակտիվորեն մասնակցել են Բեռլինի գրավմանը:

Մեծ Հայրենականի հաղթանակից հետո Հ. Բաբաջանյանն ավարտում է ՍՍՀՄ զինված ուժերի գլխավոր շտաբի ակադեմիան: Նա եղել է Օդեսայի զինվորական օկրուգի հրամանատար, զրահատանկային ակադեմիայի պետ: Պանծա-

լի զորավարը, չնայած իր զբաղվածությանը, հարմար առիթի պահին այցելում է հայրենի Չարդախլու: Համագյուղացիների հետ նա ակնածանքով է հիշում մեծ Հայրենականի մարտի դաշտերում ընկած հայրենակիցներին, որոնք իրենց կյանքը նվիրաբերեցին մարդկության ազատագրմանը ֆաշիստական լծից:

Սրտաբաց զրույցներից մեկի ժամանակ մարշալը նկատում է, որ հարյուրամյա Ստեփան Քոչարյանի գոտուց դաշույն է կախված և հարցնում.

— Ստեփան դայի, ինչո՞ւ ես դաշույնով ման գալիս:

— Զենքը, որդի՛ս, նաև պաշտպանության համար է, այդ դու ինձանից լավ գիտես,— իմաստալի պատասխանում է ծերունին:

Զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ Հ. Բաբաջանյանն այժմ ՍՍՀՄ զինված ուժերի ցամաքային զորաբանակի տանկային զորքերի պետն է: Քաջ հայտնի է, թե ժամանակակից զինված ուժերի համակարգում ինչպիսի կարևոր տեղ է հատկացվում տանկային զորքերին՝ որպես ցամաքային զորաբանակի գլխավոր հարվածային ու շարժունակ ուժի:

— Մեզ, զինվորականներիս,— ասում է մարշալը,— վստահված է պաշտպանել սովետական ժողովրդի աշխատանքն ու հանգիստը: Մենք պետք է միշտ պատրաստ լինենք հարվածելու նրանց, ովքեր կհամարձակվեն ոտնձգություններ կատարել մեր սոցիալիստական հայրենիքի դեմ...

Այս խոսքերը կարող են նշանաբան լինել զրահատանկային զորքերի գլխավոր մարշալի ամբողջ գործունեության համար: Այս խոսքերի մեջ ամփոփված է նրա բովանդակալից ու հարուստ կյանքի իմաստը:

Կենսագործելով կուսակցության XXV համագումարի առաջադրանքները, մեր փառապանծ զինված ուժերը, նրանց շարքերում սովետական տանկիստները, անդուլ կատարելագործում են իրենց մարտական ու քաղաքական պատրաստականությունը, արթուն կանգնած են մեր մեծ հայրենիքի պաշտպանության դիրքերում:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## *ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԵՎԵԼԻ ԾՈՎԱԿԱԼԸ*

...1942 ԹՎԱԿԱՆԻ ԱՇՆԱՆԱՅԻՆ մռայլ մի առավոտ սևծովյան նավատորմի տորպեդային կատերը Սուխումիի նավահանգիստը բերեց ծանր մի վիրավորի: Ուղեկցողները՝ Հյուսիս-կովկասյան ռազմաճակատի զինվորական խորհրդի անդամները, ռազմածովային նավատորմի լավագույն բժիշկ-վիրաբույժներն զգուշությամբ փոխադրեցին նրան հատուկ վագոն: Յուրօրինակ նամփորդություն էր այդ: Սալոն-վագոնի առջևում հրանոթներով, իսկ ետևում՝ զենիթային թնդանոթներով զրահավորված վագոններ էին:

Այսպես Թբիլիսի փոխադրեցին ծանր վիրավոր ծովակալ Իվան Ստեփանի Իսակովին: Մահվան շեմին կանգնած Իսակովին կարդացին Գերագույն գլխավոր հրամանատարության հեռագիրը. «Արիացե՛ք. մասնագետների կարծիքով Դուք կապաքինվեք: Սևծովյան նավատորմի լավագույն ականակիրը կկոչվի Ձեր անունով»: Ոչինչ այդպես բարերար ազդեցություն չէր թողել ծանր վիրավոր Իսակովի վրա, ինչպես Մոսկվայից ստացված այդ հեռագիրը:

Մեր ձեռքի տակ է Ա. Արզումանյանի *Ծովակալը* գիրքը[1], նվիրված ականավոր ադմիրալ, Սովետական Միության նավատորմի ծովակալ Ի. Ս. Իսակովին:

Իվան Ստեփանի Իսակովը սովետական պետության ռազմական ու հասարակական հայտնի գործիչներից է, ճանաչված գիտնական ու գրող: Հիրավի, նա բազմապատկեց սովետական ռազմածովային նավատորմի փառքը: Սովետական նավատորմի փառավոր պատմության հետ սերտորեն կապված Իսակովի սիրալի կյանքն ու գործունեությունը համակողմանի արտացոլված են գրախոսվող աշխատության մեջ: Անձամբ ճանաչելով Իսակովին՝ հեղինակը չի սահմանափակվել միայն անձնական տպավորություններով. նա լայնորեն օգտագործել է արխիվային ժառանգությունը, նամակները, զինվորական շատ դեկավարների ուսումնասիրություններն ու հուշերը: Զրույցներն ու հանդիպումները նրանց հետ հնարավորություն են ընձեռել հեղինակին՝ բացահայտելու Իսակովի ներքին հմայքը, նրա մարդկային հիանալի հատկությունները, իմաստավորելու ու դրվատելու ականավոր նավատորմավարի զինվորական ուղին:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության առաջին իսկ օրերից ռուսական նավատորմի միչման Ի. Ս. Իսակովը զինվորագրվում է հեղափոխությանը:

Սովետական կարգերին հավատարիմ այն սպաների շարքում էր նա, որոնք մեծ դեր խաղացին 1918 թ. Բալթիական նավատորմը գերմանացիներից փրկելու գործում: Լինելով «Իզյասլավ» ականակիր էսկադրայի մարտական հրամանատարը՝ Իսակովը մասնակցում է երիտասարդ սովետական իշխանության նավատորմի վերախմբավորմանը՝ Կրոնշտադտում ու Պետրոգրադում: Մասնակցությունը հայտնի «Սպարտակ» նավատորմի երիտասարդ հրամանատարի մարտական մկրտությունն էր: 1919 թ. սկզբին, երբ սովետական հանրապետության զինված ուժերի ծանրության կենտրոնը փոխադրվեց հարավ, Ի. Ս. Իսակովն ուղարկվեց Վոլժսկո-Աստրախանյան նավատորմիկ: Որպես «Деятельный» ականակրի էսկադրայի հրամանատար, Իսակովը մասնակցեց Կասպից ծովի բոլոր մարտերին, ինչպես և 1920 թ. մայիսին՝ Էնզելիի նշանավոր օպերացիային, որով Կասպից ծովի չրջակայքը լիովին մաքրվեց սպիտակներից ու անգլիացիներից:

1920 թ. վերջերին Ի. Ս. Իսակովը կրկին Բալթիկայում է. նա ակտիվ մասնակցում է Բալթիական նավատորմին առաջադրված խնդիրների կատարմանը, մասնավորապես՝ առաջին համաշխարհային և քաղաքացիական պատերազմների ժամանակ ականապատված ծովի ականազերծմանը: Բալթիկ ծովն իր դռները բացեց խաղաղ ծովագնացության համար:

Այդ տարիներին իսկ երիտասարդ Իսակովը սևծովյան նավատորմի ղեկավարության կողմից բնութագրվել է իբրև արտակարգ աշխատունակ,

[1] Ашот Арзуманян. **Адмирал.** Воениздат, 1976.

ների, կղզիների ու թերակղզիների անունները: Աշխարհագրական անունների տառադարձության մանրակրկիտ աշխատանքը հնարավորություն ընձեռեց վերջ տալու Անգլիայի դարավոր մենաշնորհին այս ասպարեզում. անգլիականացված ծովային աշխարհագրությանն ուղեկցում էր Հեռավոր Արևելքի ճապոնականացված ծովային աշխարհագրությունը: Այդ վիթխարի աշխատության գնահատման համար բավական է հիշել, որ *Ծովային ատլասի* առաջին հատորում նշված է աշխարհագրական 110 հազար անուն:

*Ծովային ատլասի* երկրորդ հատորի լույսընծայումը նշանակալից իրադարձություն էր համաշխարհային աշխարհագրական գիտության մեջ, որը մինչ այդ նման հրատարակչություն չէր ունեցել: Պատահական չէ, որ *Ծովային ատլասի* երկու հատորները դարձան աշխարհի նավաստիների հանրագիտարանը: *Ատլասի* երրորդ, ռազմա-պատմական հատորը մեր հայրենիքի մարտական ու հեղափոխական անցյալի քարտեզագրական յուրօրինակ տարեգրությունն է:

Գնահատելով Իսակովի գիտական մեծ ծառայությունները, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան ընտրեց նրան թղթակից անդամ, իսկ ՀՍՍՀ գիտությունների ակադեմիան՝ պատվավոր անդամ:

1958 թ. մինչև իր կյանքի վերջին օրերը (ծովակալը մահացել է 1967 թ.) Ի. Ս. Իսակովը ՍՍՀՄ զինված ուժերի մինիստրությունում վարում էր տեսչական պատասխանատու պաշտոն և ծավալուն աշխատանք տանում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայում:

Սովետական Միության նավատորմի ադմիրալ Ի. Ս. Իսակովը հայտնի է նաև որպես գրող: Միլիոնավոր ընթերցողներ ողջունեցին ծովագետ-գրողի հայտնվելը, ըստ արժանվույն գնահատեցին նրա պատմվածքների գեղարվեստական վարպետությունը, ինքնատիպ հումորը: Իսակովը ցավում էր, որ ժամանակը թույլ չի տվել լրջորեն զբաղվելու գրական գործունեությամբ:

Հյուսիսային ծովի կապտագույն ջրերն ակոսում է «Ծովակալ Իսակով» հածանավը, որի անձնակազմը հպարտությամբ է կրում փառապանծ ծովապետի անունը: Իսակովի կյանքն ու գործը ուղենիշ աստղ են մեր փառապանծ ռազմածովային ուժերի համար. նրա նվիրական անունը ընդմիշտ կմնա սովետական մարդկանց, ծովայինների երախտապարտ սրտում:

Աշոտ Արզումանյանի *Ծովակալը* գրքի շնորհիվ ընթերցողը կծանոթանա մեր ռազմածովային նավատորմի զարգացման կարևորագույն փուլերին:

Գիրքը լիովին համակված է սովետական պատմագիտության խոր ըմբռնումով. հեղինակը կարողացել է ըստ արժանվույն գնահատել մեծ ծովակալի սխրալի կյանքն ու փառավոր գործը: Անցքերի ու դեպքերի համակողմանի շարադրանքն ընթերցողներին ճշտորեն կողմնորոշում է պատմական այդ օրերի իրադարձություններում և համոզում, որ սովետական ռազմածովային ուժերի հաղթանակն օրինաչափ է: Այս առումով հեղինակին հաջողվել է ամենայն կոնկրետությամբ վերհանել ու դրվատել խոշորագույն գիտնականի և տաղանդավոր ծովակալի՝ հայրենիքին մատուցած մեծագույն ծառայությունները: Գրքի հայրենասիրական դաստիարակչական արժանիքն ակնբախ է, լեզուն հարուստ է, գրավիչ:

Ցավոք, հետաքրքրությամբ կարդացվող այս գրքում տեղ են գտել փաստագրական և ժամանակագրական որոշ անճշտություններ (տե՛ս էջ 129, 304, 311):

Հ. Ց. ԼԻԼՈՅԱՆ
*Պատմական գիտությունների թեկնածու*




Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 04306 Պատվեր 707 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.400 Գինը 20 կոպ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 8/IV-1977 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան; Ավ. Իսահակյան փող. № 28:*


# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 9: «Հայաստան» հրատ., 1976:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Տուլայի պաշտպանների մեծ սխրանքը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Վ. ԱՅՎԱԶՅԱՆ— Հակակոմունիզմը իմպերիալիզմի գաղափարախոսությունն ու քաղաքականությունն է: *«Հայաստան» հրատ., 1976:*

Ս. ԶՈՒՐԱԲՅԱՆ— ՍՍՀՄ արտաքին տնտեսական կապերը և երկու սիստեմների տնտեսական մրցությունը: *ԵՊՀ հրատ., 1976:*

Ն. ԼՈՒՉՆԻԿ— Ինչու եմ նման հայրիկիս: *Հեղինակը՝ գիտնական-բուսաբանը, ընթերցողի առջև բացում է ժամանակակից գենետիկայի խնդիրների լուծման բարդ ու հետաքրքրական ուղիները: «Հայաստան» հրատ., 1976:*

Ս. ԶԻԼԻՆԳԱՐՅԱՆ— Մարդը և բնությունը: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Հողին ու մարդուն նվիրված: *«Հայաստան» հրատ., 1976:*

ՅՈՒ. ԿԱՐՈԼԿՈՎ— Ցելիքս— նշանակում է երջանիկ: *«Հայաստան» հրատ., 1977:*

Գ. ԴԱՐԲԻՆՅԱՆ— Աշխատանքի կազմակերպումը և նյութական խրախուսումը սովխոզներում: *«Հայաստան» հրատ., 1976:*

Է. ՕՐԴՅԱՆ— Արտադրանքի որակի կառավարման պրոբլեմները: *«Հայաստան» հրատ., 1976:*

**Славный сын Коммунистической партии и советского народа.** К 70-летию Генерального секретаря ЦК КПСС товарища Леонида Ильича Брежнева. М., Политиздат, 1977.

**П. МОСКОВСКИЙ, В. СЕМЕНОВ — Ленин в Финляндии.** Памятные места. М., Политиздат, 1977.

**Мир о XXV съезде КПСС.** М., Политиздат, 1977.

**С. ХЕЙНМАН — Научно-техническая революция сегодня и завтра.** М., Политиздат, 1977.

**В. БАРУЛИН — Соотношение материального и идеального в обществе.** М., Политиздат, 1977.

**Н. КРУТОВ — Мораль в действии.** (О закономерностях влияния морали на поведение личности). М., Политиздат, 1977.

**Н. ПАТОЛИЧЕВ — Испытание на зрелость.** М., Политиздат, 1977.

**Франц ТАУРИН — Без страха и упрека.** Повесть о Николае Серно-Соловьевиче. М., Политиздат, 1977.

**Г. ЛЯЛИНА — Баптизм: иллюзии и реальность.** М., Политиздат, 1977.

**Е. ХРУЦКИЙ — Экономико-математические методы в планировании материально-технического снабжения.** М., «Экономика», 1977.

**В. АХУНДОВ — Совершенствование структуры общественного воспроизводства.** М., «Экономика», 1977.

ԳԻՆԸ՝ 20 Կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### «ԱԿՆԹԱՐԹԱՅԻՆ» ԿԻՆՈ

*Ամերիկյան «Պոլարոիդ» ընկերության ինժեներները կինոսիրողների համար մշակել են սկզբունքորեն նոր սիստեմի «ակնթարթային» լաբորատորիա։ Ժապավենի երևակման ոչ մի սովորական գործողություն չի նախատեսվում։ Կինոխցիկում տեսախցիկում կասետան (լուսանկարչական տուփը) լիցքավորվում է մագնիտոֆոնի կոմպակտ կասետայի նման։ Նկարահանումից հետո այդ նույն կասետան ագուցվում է պրոյեկցիոն սարքին, որն անմիջապես պատկերահանում է։*

### ԳՐԱՆԻՏ՝ ՄՈԽՐԻՑ

*Պեմզայի թեթևություն և գրանիտի դիմացկունություն ունի այն նոր շինանյութը՝ գրալիտը, որը մշակել են լեհական Օպոլե քաղաքի ցեմենտի ինստիտուտի մասնագետները, օգտագործելով ջերմաէլեկտրակայաններից տարածվող մոխիրն ու հատուկ հավելանյութեր։ Գրանիտը կարելի է գործածել որպես երեսպատման պատրաստի սալիկներ, ինչպես և՝ արագ չորացող ծեփանյութ։*

### ԴԻՍՊԵՏՉԵՐԱԿԱՆ ԿԵՏ

*Վերջերս ՍՍՀՄ ԺՏՆՑ-ում ցուցադրվել են հատուկ նշանակության հեռուստակառավարման յուրօրինակ պուլտեր. պաշտպանական ազդանշանային կառավարման* (УПУОС), *ավիաուղևորների և ուղեբեռների օպերատիվ գրանցման* (РЕГУС), *գնացքների շարժման կարգավորման համար* (НЕВА)։

«УПУОС»*-ի օգնությամբ ապահովվում է խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների և օդանավակայանների հուսալի պաշտպանությունը հրդեհից կամ չարամիտ գործողություններից։ Հրդեհի դեպքում պուլտում հնչում է տագնապի ազդանշան և, եթե դրան չեն հաջորդում հերթապահի հատուկ հրահանգները, ապա ավտոմատ կերպով գործում են համապատասխան հրդեհամարիչ սարքերը, կանչվում է հրդեհի կարգախումբը, միացվում են օրյեկտը լուսավորող և տեսադաշտն ընդգրկող հեռուստատեսային հսկա սարքեր։ Եթե խախտումներ են եղել պաշտպանվող տեղանքում, այդ մասին անմիջապես հաղորդվում է հերթապահին և ավտոմատորեն ձեռնարկվում են պաշտպանական միջոցներ։*

«РЕГУС»*-ը ավտոմատորեն հաշվառում և հանձնում է ինքնաթիռի բեռնման տպագիր փաստաթղթերը, նշելով, թե ուղևորներից քանի՛սն են մեծահասակ, քանի՛սը երեխա, անվճար և վճարովի ուղեբեռների տեղերի, ձեռքի ծանրոցների թիվը։*

«НЕВА»*-ն հնարավորություն է ընձեռում երկաթուղային դիսպետչերին 150* կմ *հեռավորության վրա կառավարելու տեղամասի բոլոր սլաքներն ու ազդանշանները, իսկ լուսատախտակի վրա՝ հետևելու գնացքների ընթացքին ու կանգառներին։*

### ԱՂՄԿԱՋԵՐԾԻՉ

*Այժմ ստեղծվում են հարյուրավոր ձայնամեկուսիչ նյութեր, որոնցից իր էժանությամբ ու պարզությամբ ամենահարմարը վինիպորն է — կիսակարծր պոլիվինիլքլորիդը, որը մշակել են սինթետիկ խեժերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի մասնագետները։ Շենքի երեսպատման ժամանակ նյութը լավ է սոսնձվում պատերին ու առաստաղին։ Այն աչքի է ընկնում աղմկակլանիչ բարձր արդյունավետությամբ։ Չի փշրվում, չի փոշոտվում, հրակայուն է։*

### ԹՈՒՂԹ՝ ԾԽԱԽՈՏԱԳԱՇՏԻՑ

*Բուլղարիայում ծխախոտատերևների բերքահավաքից հետո ամեն տարի յուրաքանչյուր հեկտարում այրվում են մոտ 400* կգ *ծխախոտի ցողուններ։ Սոֆիայի քիմիա-տեխնոլոգիական ինստիտուտում մշակել են բուսական մնացորդների վերամշակման ռացիոնալ եղանակ։ Համապատասխան քիմիկատների հետ ծխախոտի ցողունները 2—3 րոպե եփվում են ցելսիուսի 500 աստիճան ջերմության պայմաններում, բարձր ճնշման տակ։ Ապա, անմիջապես այդ տաք նյութը մանրվում է մեխանիկական հատուկ աղացով։ Ստացվում է ցելյուլոզա՝ թղթի և փաթեթավորման ստվարաթղթի պատրաստման համար։ Այդ եղանակը պատենտավորվել է աշխարհի 18 երկրներում։*